# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ՀԱՍՑԵՆ՝ 375015, ԵՐԵՎԱՆ 15, ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՓՈՂՈՑ № 15։ ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—43—38։

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Լույս է տեսնում 1923 թվականից

## Այս համարում 5•86



Հանձնված է տպագրության 26.II.1986 թ.։ Ստորագրված է տպագրության 29.IV.1986 թ.։ ՎՖ 06682։ Թուղթ օֆսեթ, 70×100 1/16։ Տառատեսակը՝ Նորք։ Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.։ Տպաքանակ՝ 69532։ Պատվեր 469։ Գինը՝ 15 կոպ.։

Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2։

Сдано в набор 26.11.1986 г. Подписано к печати 29.IV.1986 г. Формат 70×100 1/16. ВФ 06682. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа, 3,0 уч.-изд. листа. Тираж 69532. Заказ 469. Цена 15 коп.

Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.

Շապիկի 1-ին էջը՝ ՄԻՀՐԱՆ ՔԵՉՕՂԼՅԱՆԻ

ՎԱՀԱՆ ՄԱՂԱԼՅԱՆ

## Գարուն

Ամենուր ծաղիկ, ամենուր կակաչ,
Ամենուր անուշ մանկական քրքիջ,
Ամենուր պայծառ աղբյուրի կարկաչ,
Ամենուր կանաչ գարուն է կրկին։

Ծաղկել են նորից ծառերը դողդոջ,
Սեր են շշնջում ամեն ծիլ, ավիշ,
Ես էլ կուզեի լինել մի բողբոջ
Ու անտես բացվել դաշտերում թավիշ։

Ես էլ իմ բույրը տայի մայր հողին,
Անուշ բուրեի ամենքի համար,
Ու թե գար մեղուն, իջներ իմ ցողին,
Նեկտարս առներ, ինձնից գոհանար։

Այդպես մնայի թավիշ, բուրավետ,
Ու ցողունիս մոտ խոխոջեր առուն,
Եվ մեղմ զեփյուռից խշշայի հավետ,
Երգեի անուշ՝ գարո՜ւն է, գարո՜ւն։

Նկարը՝ ՀՈՎՀԱՆՆԵՍ ԱՆՏՈՆՅԱՆԻ






Մեր հին, անցյալի հրաշալի պատմություններով լեցուն մեծ տանը միասին ապրում էինք տատս, ամուսնացած երկու հորեղբայրներս, մեծ հորաքույրս, հայրս, մայրս և իմ երկու եղբայրները: Նոր տարվա տոներից հետո իրենց հեռու քաղաքից հյուր էին գալիս միջնեկ հորաքույրս ու իր ամուսինը և մի ամիս մնում էին: Ձյուների մեջ թաղված մեր տանը նստում էին նրանք մինչև կեսգիշեր, և ծորում էին հին, հրաշալի պատմությունները անցյալի մեծ դեպքերի, պատվավոր տղամարդկանց ու հողի մասին:

Մեր մեծ տան գրագետը ավագ հորաքույրս էր, հայրս և միջնեկ հորաքրոջս ամուսինը, որոնք քաղաքում էլ էին եղել, կինո էլ էին տեսել ու գրքեր էլ էին կարդացել: Ամենից հաճախ պատմում էին Րաֆֆու «Դավիթ-Բեկ» և Սերո Խանզադյանի «Մխիթար սպարապետ» վեպերը: Պատմությունները սովորաբար սկսում էին «Դավիթ-Բեկ» վեպից, որովհետև «Դավիթ-Բեկ» կինոն էլ էին տեսել: Բայց կինոյում տեսածը իրականում տեսածի նման էր՝ դրան չէր կարելի որևէ բան ավելացնել: Իսկ վեպը կարդալիս ունեցած իրենց իսկ զգացումներն ու երևակայածը նրանց թվում էր վիպական իրականության մաս՝ վեպում գրված և ոչ թե իրենց հորինած:

Ահա՝ նույնպիսի մեծ թափով նրանք պատմում էին Սերո Խանզադյանի «Մխիթար սպարապետ» վեպը՝ ոգեշնչված, տեղնուտեղն էլ հորինելով ու գրքում եղածին ավելացնելով իրենցը: Ես հիմա հիշում եմ, թե նրանց պ ա տ մ ե լ ո վ ի ն չ պ ի ս ի ն էր Մխիթար սպարապետի սուրը, ավելի ճիշտ՝ սրերը: Վեպում գրված «երկսայրի» բառը նրանք հասկացել էին ոչ թե երկու կողմից էլ կտրուկ, սուր, այլ՝ երկու սուր: Ասում էին, որ Մխիթար սպարապետը երկու սրով էր կռվում, որոնցից ամեն մեկը վաթսուն փութ էր, իսկ դա նրա նման հսկայի համար այնքան էր թեթև, ինչպես ուռենու բարակ ճիպոտը իմ ձեռքին, երբ ամռան իրիկնապահերին գնում էի գառները բերելու: Ես Մխիթար սպարապետի սրերը պատկերացնում էի մեր տնից մինչև աղբյուր (մոտ հարյուր քայլ) երկարությամբ, կտրուկ ու փայլուն, և ոչ մի անգամ պատյան չմտնող, որովհետև դրանք պատմության ամբողջ ընթացքում թշնամիներ էին կոտորում և, ուրեմն՝ նրանց պատյան պետք չէր: Եվ նրանք արդար սրեր էին: Ու հերոս սրեր էին, որովհետև հայոց զորքի ամբողջ ուժը դրանցով էր չափվում:

Եվ հրաշալի ծորում էր պատմությունը: Այդ ընթացքում մայրերը քնեցնում էին մանր երեխաներին, վառարանի վրա մեծ թեյնիկով նոր թեյ էին դնում, իսկ ես՝ պառկած տատիս թախտին, աչքս պատմողի բերանին՝ իմանալով, թե ահա-ահա ինչ կարևոր տեղի է մոտենում պատմությունը, անհամբեր ու նախօրոք հուզված սպասում էի: Տղամարդ-



# ՍՊԱՐԱՊԵՏԻ ՍՈՒՐԸ

*Սերո Խանզադյանը Հայրենական պատերազմի տարիներին*

կանցից փոքրերը՝ փոքր հորեղբայրներս ու մեր ազգականները, նստում էին աթոռներին, իսկ հայրս ու հորաքրոջս ամուսինը թիկն էին տալիս անկողնու ծալքերին, և բոլոր տեղերն այնպես էին զբաղված, որ նույնիսկ երեխայի նստելու տեղ չկար:

Ուրախության հուզմունքը բոլորին էր բռնում՝ պատմող հայրս կամ հորաքրոջս ամուսինը (նայած, թե այդ գիշեր որն էր պատմողը) պառկած տեղերից ուղղվում, նստում էին: Գիշերվա այդ խորը ժամին տունն այնպես էր շոգում, որ դժվար էր տոթին ու հուզմունքի նեղվածությանը դիմանալը: Խոսքի մեծությունից ու հուզմունքից կարծես խեղդվում էինք, և բոլորն ակամա տեղերում շարժվում էին: Որովհետև մեծ, կարևոր խոսքը չի կարելի պառկած ասել, ապա պատմողը աննկատելի ուղղվում, նստում էր: Այդ պահին նրա ձայնը հուսահատորեն դատարկվում էր՝ լսողներս միայն ձայնից էինք հասկանում, որ հայոց զորքերը պիտի պարտվեն: Դավիթ-Բեկը և նրա զորավարները թուրքաց զորքերի թիկունքում նկատում են մեծ փոշի, որը մեծ զորքի նշան էր՝ նրանց օգնություն էր գալիս, իսկ իրենց մի բուռ քաջերը հալվում էին: Եվ հանկարծ՝

— Դիմացե՜ք, եկա,— բարձր, զրնգուն ու արցունքախեղդ ձայնով կանչում էր պատմողը: Ծալքի բարձրից նրա ոտքերը գետնին չէին հասնում, և երբ կանչի հետ էլ ինչպես սուր բարձրացնելիս գլխավերևում թափահարում էր ձեռքը, մենք բոլորս նրան այդ պահին տեսնում էինք որպես իրեն՝ Մխիթար սպարապետին:

Ովքեր կարդացել են Սերո Խանզադյանի «Մխիթար սպարապետ» վեպը, իհարկե, հիշեցին, որ դա այն տեղն է, երբ ճակատամարտի ամենաթեժ պահին Դավիթ-Բեկից խռոված Մխիթար սպարապետը, հայերի համար ևս անակնկալ՝ իր տասնհազարանոց գնդով զարկում է թուրքական զորքերի թիկունքին, և ճակատամարտն ավարտվում է հայերի հաղթանակով:

Պատմողը արցունքները կուլ տալով, բայց մեծ թափով ու հուզմունքով շարունակում էր խոսքը:

— Եվ ինչպե՞ս չճանաչեր նրան, որ սլանում էր ու ճակատամարտի փոշու միջով իսկ այնպես փայլեցնում սուրը, որպես միայն նա էր կարող...

Կանայք լալիս էին, խոնարհ նայում տղամարդկանց, հավատում, որ նրանք էլ են այդպես հայրենասեր ու քաջ, և իրենց ճանաչածով ամեն մեկին համարում էին մի-մի կերպար վեպից: Այդ ամենը իրականություն էր՝ վեպը և բոլոր ներկաները մի ժամանակում միասին էին ապրում, և միայն նրա համար, որ բացասական հերոսներ կային նաև հայերից, մինչև հիմա էլ մեր գյուղում այդ անունները ոչ ոքի չեն տալիս:

Այդ գիշերները հիմա էլ են նույն ձևով ընթանում: Պարզապես հիմա ես եմ մեծացել ու այնտեղ չեմ, իսկ մնացած ամեն ինչը էլի նույնն է: Միայն թե մերոնք արդեն գիտեն, որ ես «էսպես՝ բան-ման եմ գրում» և մի օր, երբ իմ գրածը տպագրված տեսան, հավատացին, որ ես կարող եմ գնալ, հանդիպել Սերո Խանզադյանին և նրան հրավիրել մեր գյուղ: Երբ «Մխիթար սպարապետ» վեպը տպագրվել էր, նրանք գրքո՞ւմ, թե՞ թերթերում, չգիտեմ, տեսել էին Խանզադյանի նկարը, և ինձ նկարագրում էին, թե նա ինչպիսի մարդ է, որպեսզի հանկարծ չշփոթեմ:

Ես դեռ Սերո Խանզադյանին չեմ կարողացել հրավիրել մեր գյուղ, և հիմա կաշկանդվում եմ՝ չէ՞ որ Սերո Խանզադյանը յոթանասուն տարեկան է, անցած տարվա դեկտեմբերին նա դարձավ յոթանասուն տարեկան: Այսինքն՝ նույնիսկ ինձ է պապ գալիս, ես ինչպե՞ս կարող եմ չամաչելով, չկարմրելով ու ազատորեն խոսել նրա հետ: Մի գրողի հետ, որի վեպը ինձ համար մեծ պատմություն էր խաղաղության ու հերոսության մասին այն հին գիշերներում, և ես մինչև հիմա էլ հավատում եմ, որ Մխիթար սպարապետի սուրը մոտ հարյուր քայլ երկար էր ու վաթսուն փութ ծանրություն ուներ: Այն ժամանակ դեռ մեր գյուղում թարմ էին Հայրենական պատերազմի վերքերը, և նույնիսկ հասուն տղամարդիկ էին հավատում Մխիթար սպարապետի մեծ սրին, իսկ կանայք զարմանում էին, թե ինչպես է, որ Մխիթարը այդ թշնամիներին էլ չի պատժել:

Նրանք չգիտեին, որ Մխիթարի սուրը ձեռքին մեծ Հայրենականի ճակատներում որպես զինվոր մարտնչել է նաև Սերո Խանզադյանը, պարգևատրվել բազմաթիվ շքանշաններով ու մեդալներով, իսկ պատերազմի ավարտից հետո մինչև այսօր գրողը գրչով է կռվում պատերազմի չարիքի դեմ: Սկսած երեխաների համար գրված պատմվածքներից մինչև ծավալուն վեպերն ու վիպակները Սերո Խանզադյանը Մխիթար սպարապետի վաթսուն փթանոց սրով կռվում է խաղաղության համար: Սերո Խանզադյան գրողի ու խաղաղության զինվորի արգասավոր ճանապարհը 1985 թվականին պսակվեց Սոցիալիստական աշխատանքի հերոսի ոսկե աստղով, որը հայրենիքի ու ժողովրդի ամենամեծ գնահատականն է իր մարտիկին:

Իսկ մերոնք այսօր էլ համոզված են, որ Մխիթար սպարապետի վաթսուն փթանոց սուրը կա ու կլինի... և ձմռան երկար գիշերների նրանց խաղաղությունը այդ գիտակցությամբ է լեցուն:

**ՎԱՐՈՒԺԱՆ ԱՅՎԱԶՅԱՆ**



**ԱՇԽԵՆ ԱԲԱԶՅԱՆ**

# Մանկությունս մնաց սարերում

## Մեր գիժ սարը, կայծակները և...

Մեր սարին կոչում են Գիժ սար: Երևի նրանից է, որ ծաղիկներն այստեղ գժավարի են գունավորվում՝ նայողներին խենթացնելով իրենց խենթ բուրմունքով, կակաչներն անես կատաղությունից են կարմրել, որ մրցեն դեղին, կապույտ, սպիտակ զանգակների ու խնձորածաղիկների հետ: Ջրերը խելագար քչքչոցով ձորերի ականջն են մտնում ու խլացնում նրանց, իսկ ամպամերձ ժայռերից պոկվող քարերը չեն հասցնում ետ նայել, շունչ քաշել, որ թուլացնեն գլորվող թափը և անօգնական ու անզոր փշուր-փըշուր են լինում ձորապռնկի դաղձերի հըմայիչ որոգայթներում: Խենթի նման ենք նաև մենք՝ փոքրիկ սարեցիներս, որ մընացել ենք մոլորված՝ չգիտենք՝ ո՞ր ծաղկից պսակ հյուսել, որի՞ նեկտարով օծվել և որով հիանալ, ջրերի քչքչո՞ցը լսել, թե՞ քամիների հաճելի փսփսոցը՝ հեռուներում թափառող ուրիշ կարոտների ու գույների մասին, որոնք ձայն ունեն ու կանչում են մեզ անտեսանելի ձեռքերով:

Բայց սրանք ի՞նչ են կայծակների մոտ: Այ, իսկական գժությունը նրանցն է: Պայծառ, արևոտ կեսօր: Մեկ էլ որտեղից որտեղ ամպերը հավաքվում են, երկինքը սևականում է, հոնքերը կիտում, և կայծակները անհագուրդ վրիժառուի պես ճըռճըռալով հարվածում են ժայռոտ գագաթներին, հենց այնտեղ, ուր ձիերի երամակը, կուշտ արածելուց հետո, գլուխ գլխի տված հանգստանում է: Զարմանալի բընավորություն ունեն ձիերը նույնպես: Կանաչ արոտներում արածում են, հետո վըրընջալով, իրենց քեֆի կտրածի չափ աջ ու ձախ սլանում, մի լավ խաղում քամիների ու հովերի հետ, ապա բարձրանում ժայռերի տափարակ գլուխը:

Ժայռոտ գագաթները միայն ձիերին ու կայծակներին չէ, որ հրապուրում, իրենց են քաշում: Փոքրիկ ժայռակտորների ստվերոտ խորքերում արևի լույսից կըրված բնակվում են խխունջները: Մեր սամենամեծ զբաղմունքը խեցիներ հավաքելն է: Ջահել խխունջները երբ զգում են, որ նախկին զրահը փոքրություն է անում իրենց փափուկ մարմնին, դանդաղորեն դուրս են գալիս այնտեղից, գնում մարմնի նոր չափերին հարմար խեցի հյուսելու: Դատարկ խեցիները ասես սպասում են, որ որոնենք ու գտնենք իրենց, լույս աշխարհ հանենք ինչպես մարգարիտ, որ եթե ծովի հատակից հանող չըլինի, այդպես էլ կմնա անհաղորդակից մեծ աշխարհին ու մեծ կյանքին: Տեսքով նույնպես խեցիները նման են մարգարիտի՝ լինում են ճերմակ, զոլերով, պուտպուտ, կլոր ու երկարավուն, փոքրիկ թռչնի ձվի մեծության:

Օրերով ժայռարանքներից դուրս չենք գալիս: Կուզեկուզ ենք մտնում, նույնիսկ սողալով՝ որսի հետքը բռնած որսորդի նման, ոտք ու ձեռք արյունլվա անում:

Բոլոր ցավերը մոռացվում են նոր խեցեկույտ հայտնաբերելիս: Խնդությունից խենթանում ենք՝ մեզ հետ խենթացնելով նաև Գիժ սարի ծաղիկներին, որոնք ասես հիանում են մեր արարմունքով, ծըլպտում, գովում, քաջալերում իրենց շշուկներով ու խորհրդավոր փսփսոցներով: Հետո խեցիները հուլունքի նման շարում ենք, կախում վզներիցս, չխկչխկացնելով ու հպարտությամբ ցուցադրում մեր հարըստությունը:

Բոլորը, ես էլ բոլորի հետ, որոտացող ամպերից ու կայծակներից չէի վախենում: Հենց որ ամպերը գոռոցը կապում էին, կանգնում էի վրանի առջև, առանց աչքս թարթելու հետևում կայծակների փայլատակումներին: Ուզում էի այդ պահերը երկարեն, անսահմանորեն երկարեն, որովհետև ինձ համար դա խաղ էր, խաղ՝ երկնքի ու մեր Գիժ սարի ժայռոտ գագաթների միջև, խաղ, որի վերջնական հաղթողը ժայռերն էին: Դրանք իմ



Նկարը՝ ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ

կյանքի ամենահրապուրիչ պահերից էին: Փախչկան քամիները մտնում էին ձիերի ականջը և խենթացնում մեր միամիտ նժույգներին, որոնք պոչները վեր տնկած վրնջում էին կանաչ արոտներում ու անձրևի կաթոցի հետ վազում վրանների կողմը: Շները հաչոցները շատացնում էին, հետո առաջին որոտի հետ անմիջապես սսկվում: Թռչունները բները էին մտնում վախվորած, իսկ ավելի համարձակները թռչում էին կանաչներին քսվելով: Մեղուների բզզոցն էլ էր կտրվում: Ասես բոլորը ներքին մի հզոր ձայնով, իրար թաքուն իմաց տվածի նման ուզում էին կաթող անձրևի, ահեղագոչ որոտների ու սևակնած ամպերի հանդիսատեսը դառնալ: Այս ամենը սարվորների համար սովորական տեսարան էր, որ երբեք սովորական չէր դառնում, ինչքան էլ կրկնվում՝ չէր փոխարկվում ձանձրույթի: Մոզարած Ռուբենը փորձում էր տրտընջալ.

— Էս անտերը էլի սկսեց:

Նրա տրտունջի մեջ սակայն նեղսրտություն չկար, որովհետև հաջորդ պահին, երբ անձրևը խոշոր կաթիլներով տկտըկացնում էր վրանների բրեզենտներին, նա երանությամբ շշնջում էր.

— Խոտր կառատանա, խոտը կբարձրանա... արի, է՜, ակիդ մատաղ...

Բոլոր մեծերը Ռուբենի նման էին մըտածում, նրա նման ուրախանում անձրևի համար, իսկ փոքրիկներս խնդությունից շողում էինք ոչ միայն անձրևի, այլ կայծակների ու ժայռերի փոխադարձ գոռումգոչյունների համար: Գարնանային ու աշնանային կայծակներին մենք դիմավորում էինք անտառում, ուր ֆերմայի ձմեռանոցն էր: Երկնքից պոկվող շողարձակումը ակնթարթորեն կուրացնում էր մեզ, և գոռոց էր, որ մտնում էր մեր ականջները, սարսափ ու բավականություն խառնում իրար: Հետո, հաջորդ օրը, անտառ էինք վազում՝ գտնելու վիրավոր կաղնուն: Գտնում էինք ու տխրում: Իսկ հիմա նախ դեպի ժայռերն ենք վազում և ուրախանում, որ ամպերը իրենց նպատակին չեն հասել ու խռոված ցրվել են: Նըրանք չարացած գալիս էին և պարտված հեռանում: Իսկ մի անգամ եկան ու տեսեք ինչ արեցին:

Ամեն ինչ կրկնվեց՝ ձիերը պոչները տնկած վրնջացին, շները կտրեցին հաչոցները, մեղուները թողեցին բզզալը, թռչունները բները մտան, անձրևը խոշոր կաթիլն ու շրմփաց, և հենց այդ ժամանակ նկատեցինք, որ Պեծիկ ձին իր մտրուկի հետ չի հասցրել ժայռերից իջնել: Փոքրիկը երևի շատ էր հրապուրվել ժայռեղեն բարձունքներով, չէր ուզում իջնել: Մայրը պտտվում էր շուրջը, հետո կանգնում, երկար ու տագնապալից վըրընջոցը ձգում, իսկ մտրուկի պետքը չէր: Հիանում էր ու հիանում: Կայծակները չուշացան, իրար հերթ չտալով՝ տրաքտրաքոցը կապեցին: Դա երեկոյան էր: Որոտների հանդարտվելուց հետո, թեև անձրևը շարունակվում էր, տղամարդիկ վազեցին դեպի ժայռերը, երեխաներն էլ՝ նրանց հետևից ... Կայծակը խփել էր մտրուկին:

Այդ պահից իմ մեջ սարսափի ուժգին, խելացնոր զգացում ծնվեց որոտացող ամպերի ու կայծակների հանդեպ: Եվ հիմա, ուր էլ լինեմ՝ անտառում, տանը, թե սարերում, երբ ամպերը հավաքվում են ու նոթերը կիտում, երբ կայծակները իրենց տարերքի մեջ են մտնում ու շըլացնում փայլատակումներով, աչքերիս առջև կանգնում են մեր Գիժ սարը, ժայռոտ գագաթները, նրանց ստվերում կուչ եկած խեցիներն ու... վաղամեռիկ մըտրուկը:

## Ախ, այն օրերը...

— Արևս ջան, երանի էն օրերը...,— Շողեր մոքուրի աչքերը նեղացան, կընճիռները խորացան, հայացքն ավելի խորացավ, գնաց հասավ մանկության ու իր ջահելության սարերը,— երանի էն օրերը...,— ժպիտը սեղմվեց շրթունքների արանքում, նայեց ինձ, բայց գիտեի, որ ինձ չի տեսնում, այլ՝ իր երանի տված օրերը:

Մեր տան ինններորդ երեխան էի: Ում շորը պատահել է, հագցրել են՝ տղայի, թե աղջկա՝ մեկ է: Ինձ համար էլ է մեկ եղել, ս մտքովս չի անցել, թե աշխարհում հագուստի գեղեցիկը կա, ու գեղեցիկ հագնվել կա: Մի օր էլ փշաքաղվել եմ, լեղակի գույն ստացել, շնչառությունս փակվել է: Սարեցիները ինձ համարել են մահվան դուռն հասած: Նախագահի կինը սիրուն նախշերով կտոր է հանել սնդուկից, շտապ-շտապ չափ ու ձև են արել, որ կարեն, հագցնեն ինձ: Մեղքներր եկել է, նայել են հնամաշ ցընցոտիներիս ու լաց եղել, նայել են կանաչ սարերին ու լաց եղել, շաղակոլոլ ծաղիկներին ու լաց եղել՝ որ շուտով էլ

չեմ տեսնելու: Միանգամից թանկացել եմ: Ու մեկ էլ ոչ ավել, ոչ պակաս՝ բացել եմ աչքերս ու նստել…

Այդ դեպքից մի քանի տարի անցավ. արդեն դպրոցական էի, միայն ամառները էի սարերը գնում: Նորից ամառ էր, նորից սարում էինք, անհոգ հորթուկի պես ամբողջ օրը տրտինգ էինք տալիս: Այդպիսի մի անհոգ օր ուսանողուհի Մարոյի մտքով անցավ փոքրիկներիս ականջները ծակել: Եղինջով թմրեցնում էր ականջների բլթակները, իբր ցավազրկում, ու ասեղը թափով անցկացնում: Հերթը հասավ ինձ: Չէի թողնում: Հորդորեցին, ոգևորեցին, համոզեցին: Բայց ասեղի ծակոցի հետ դուրս պրծա Մարոյի ձեռքերից ու վազում եմ, ոնց եմ վազում, ուրթի մեծ ու փոքրն էլ՝ հետևիցս:

— Սպասիր, գոնե ասեղը հանենք…,— գոռում են, բայց չեմ լսում: Ասեղն ականջիս՝ լանջերն ի վեր փախչում եմ խըրտնած մտրուկի նման: Ցավ չեմ զգում, բայց սարսափը պատել է ինձ: Վերջը երևի հոգնեցի, բոբիկ ոտքերս փշերի ծակոցներին էլ չդիմացան, հորթարած Հայկազը թևերիցս բռնեց, ու հևալով կանգնեցի: Մարոն հասավ, գործն ավարտին հասցրեց՝ ասեղը հանեց, թելը օղ արեց: Հետո Վարդավառը եկավ, նվերների հետ բոլորը ականջօղեր ստացան, ես՝ էլ: Նրանք զույգ ականջօղերով հպարտ-հըպարտ քայլում էին, ես իմ կենտ ականջօղով տխուր ու գլխիկոր կանգնում էի մեկուսի:

— Արևո ջան, երանի էն օրերը…,— Ծողեր մորքուրը, որտեղ էլ պատահի, ինձ կանգնեցնում է ու, հազար երազանք աչքերի մեջ, գլուխն օրորելով, աչքերը լըցնելով ասում,— էն ի՜նչ օրեր էին… էն ի՜նչ օրեր էին…

— Էհ, Ծողեր մորքուր, ախր երանի տալու բան չկա…

— Ո՞նց չկա,— անմիջապես ընդհատում է խոսքս,— բա էն կանաչ սարերը, բա առաջին անգամ նախշուն ծաղիկներով շոր հագնելդ, բա ասեղն ականջդ խրած լանջերով վազելդ…

Ծողեր մորքուրը երկար, շատ երկար հոգոց է հանում, մի վայրկյանում մտքերի անտակ ծովը սուզվում ու դուրս գալիս, նայում ինձ, բայց կարծես ինձ հետ չի խոսում:

— Բա որ դու երեխա էիր, ես՝ ջահել, սիրտներս ուրախ էր, բա որ կանաչ սարերում էր օրներս անցկենում…

ՆՈՐԱՅՐ ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ

# Մորս արցունքը

Մորս արցունքի լուսաշող կաթիլ,
Այնքան նման ես վաղորդյան ցողի,
Թեև ի բնե դու շատ ես աղի:

Մորս արցունքի լուսաշող կաթիլ,
Ես քեզ երդում եմ տվել հավատի՝
Լավի, բարության, լույս առավոտի:

Մորս արցունքի լուսաշող կաթիլ,
Դու սրբություն ես իմ և աշխարհի,
Քեզնով է օծված մեր խիղճր բարի:



Նախապապերիս հոգին հարատև
Հավերժ կենսունակ ու հավերժ ջահել
Հայրենի հողն է դարեդար պահել…

Նախապապերիս հոգին հարատև
Առասպելական թռչունի նման
Չունի վերջ, վախճան:

Նախապապերիս հոգին հարատև
Մեզ հետ դարերի խորքերից գալիս,
Ուժ ու կորով է մեր հոգուն տալիս:



Նկարը՝ ՀՐԱՉՅԱ ԱՎԱՆԵՍՅԱՆԻ



ԹԱԴԵՎՈՍ ՏՈՆՈՅԱՆ

# Ա-մեծատառ, ա-փոքրատառ...

— Բարև ձեզ, երեխաներ,— ասացի ես, ու դասարանը պատասխանեց.

— Ա՛յբ, բե՛ն...,— ու Մասիսների պես հզոր ու խաղաղ մի ալիք ելևէջեց՝ սկըզբում՝ փոքր ինչ մեղմ, հետո՝ ավելի խըրոխտ ու բարձր:

— ... Գի՛մ, դա՛,— դաղելով հողը քայլում էր հայրենիքի համար կամավոր ելած մի զորք, ու զորքի առջևում մի տղա (առաջին նստարանի մոտ է կանգնած), ամեն տառի արտասանության հետ ձեռքը՝ ասես սուր բռնած՝ զարկում է օդի մեջ:

— Ե՛չ, զա՛...,— զա՛րկ, զարկ՝ կարծես ձայնում են միմյանց ու կարծես շաչում, զարկզարկվում են սուր ու վահան:

— ... Է՛, ը՛թ...,— մահվան ու կյանքի միջև թևակալ մի պահ է...

— Թո՛, ժե՛...,— թեժ է մարտը...

Երա՞զ է, մտածում եմ ինքս ինձ: Այսպիսի բա՞րև: Եթե ուրիշից լսեի, դժվար թե հավատայի, կասեի՝ սիրունացնում ես, ու կհիշեի դպրոցական հին ու արդեն աննկատելի, անտարբեր, մեքենայաբար կատարվող մի սովորույթ՝ դասարան մտնում ուսուցիչը, բարևում, դասարանը փութկոտ ոտքի է կանգնում և չի նստում այնքան ժամանակ, քանի դեռ ուսուցիչը թույլ չի տվել:

Իսկ այսպիսի բարև՝ թեժ, ինչպես արեգակը, զվարթ՝ վաղորդյան ճառագայթի պես, և այնքան վստահ:

Երևանի № 183 դպրոցը քաղաքի եզրին է, նրա մոտ բաց դաշտն է, որ գընում-գնում ու Արարատ լեռան փեշն է դառնում:

Մինչ դպրոցի 4-րդ «ա» դասարանի հայոց լեզվի ու գրականության ուսուցիչ Մայիս Նիկողոսյանը մոտենում է սեղանին, ես նստարանների շարքերի միջով գնում եմ վերջին նստարանին նստելու և հիշում եմ՝ դպրոցում ինձ թվում էր, թե բարևը արև-ից է առաջացել. հայոց լեզվում, հայ ժողովրդի համար բարևը երկրորդ արևն է: Ինչ տարօրինակ է, չէ՞, ինչո՞ւ՝ տարօրինակ, ի՞նչ բնական, բնության մեջ թաթախված, բնության հետ ներդաշնակ լեզու ունենք:

Սկսվում է հայոց լեզվի դասը: Ընկեր Նիկողոսյանը կանգնում է գրատախտակի մոտ: Նրա խոսքը շատ կարճ է, և ամեն բառը զարմանալի անդրադարձում է ա-[illegible]ացնում ողջ դասարանում:

— Բառատետրերը... արագ, վերջին

բառը…
Ես մի պահ չեմ հասկանում ուսուցչին: Նա կարծես խոսում է մի լեզվով, որն ուրիշ ոչ ոքի հասկանալի չէ, բացի չորրորդցիներից: Նրանք արդեն բացել են ուղղագրական բառատետրերը և ուսուցչին հիշեցրել են այն բառը, որի վրա կանգ են առել նախորդ ժամին:
Ես ևս զգաստանում եմ, լարում ուշադրությունս, որպեսզի հնարավորին չափ շուտ յուրացնեմ դասարանի լեզուն: Ուրեմն՝ ընկեր Նիկողոսյանին պետք է հասկանալ կես խոսքից, երբեմն էլ ուղղակի պետք է հասկանալ նրա լռությունը, ինչպես հիմա. նա գրատախտակին գրում է նոր բառեր՝ կեսօր, ընձուղտ, ուղտ, հօգուտ, ու դասարանին կարծես արդեն հրամայված է արտագրել գրատախտակի բառերը:
Ուսուցիչը վերջացնում և շրջվում է դեպի դասարանը և՝ վստահ.
— Վերջացրեցի՞ք…
Ուրեմն՝ արդեն սովորույթ է, երբ ընկեր Նիկողոսյանը նոր բառեր է գրում գրատախտակին, պետք է անմիջապես արտագրել: Հետո ուսուցիչը ստուգում է՝ արդյո՞ք նախորդ դասերի բառերի գրությունը հիշում են աշակերտները:
— Առաջին չորսդ…
Առաջին շարքի առաջին չորս աշակերտը գրատախտակի մոտ են: Ուսուցիչը թելադրում է, նրանք գրում են: Մյուսներն արծվաչք հետևում են գրատախտակին:
— Հաջորդը:
Նախորդ քառյակը վազքով նստում է, գրատախտակին են մոտենում երկրորդ, երրորդ, չորրորդ քառյակները: Եվ գրատախտակը մի քանի րոպեում լցվում է դժվար ուղղագրություն ունեցող բառերով: Սխալները կայծակնային արագությամբ ուղղվում են մյուսների կողմից, սխալվողները պարտավոր են դժվար գրվող բառերի ողջ ցուցակը արտագրել. մեկ անգա՛մ ես սխալվել՝ մեկ անգամ կարտագրես, երկո՞ւ անգամ՝ կներկայացնես երկու ցուցակ:
— Ջնջեցինք…
Գրատախտակը արագ մաքրվում է, նստածների համար դա նշանակում է՝ փակել ուղղագրական բառարանները: Այժմ պետք է ստուգել նոր սովորած բառերը: Նորից՝ մեծ արագությամբ: Բոլորն ուզում են պատասխանել, ձեռքերի անտառ է բարձրանում: Ընկեր Նիկողոսյանն էր դասարան գալիս ասաց ինձ. «Չեմ թողնում ձեռք բարձրացնեն»: Բայց միևնույն է՝ երեխաները աշակերտական սովորությամբ ձեռք են բարձրացնում:
Մի փոքրիկ լռություն: Դասաժամի հաջորդ բաժինն են անցնում:
— Ակադեմիա՞… Արտակ:
— Կոճառ:
— Ծախմա՞տ… Աշխեն:
— Ծատրակ:
— Դեսե՞րտ, Ռուբեն:
— Անուշակ:
— Բասանոշկա՞…
— Բոկոտիկ:
— Տնային՝ նախադասություններ:
Նոր սովորած բառերով տանը պետք է նախադասություններ կազմեն, բայց ոչ պարզ ու հասարակ, ինչպես ասենք՝ «Ես բոկոտիկ ունեմ»-ը կամ «Ես ճատրակ եմ խաղում»-ը:
Դասի ընթացքը մի փոքր դանդաղում է: Ընկեր Նիկողոսյանի հաջորդ առաջադրանքից զգացվում է, որ նա նույնպես նկատել է այդ և դասարանին աշխուժացնում է:
— Հիմա ծառին՝ ծիծաղելի որոշիչներ:
Ամեն կողմից ձայն են տալիս՝ ես ա-սե՞մ: Ոմանք նույնիսկ չեն սպասում ուսուցչի թույլտվությանը: Նա հազիվ է հասցնում մատնացույց անել աշակերտին՝ դո՛ւ, աշակերտը արդեն բացականչում է.
— Չաղ ծառ:
Մյուսը՝
— Դմբլո՜:
Սափորից դատարկվող պաղ ու վճիտ ջրի պես գլգլում է ծիծաղը: Բայց բավական է ուսուցչի մի հայացքը, որպեսզի դասարանը կրկին իրեն հավաքի:
Գրատախտակին գրվում են բառեր՝ «մթնշաղ», «սիրում եմ», «ես», «նրբակերտ»:
Ձեռքերի լուռ անտառ՝ աղմկոտ թափահարվող:
—Ես նրբակերտ մթնշաղն եմ սիրում,— մազերը կարճ կտրած թմբլիկ մի աղջիկ է:
— Ես սիրում եմ նրբակերտ մթնշաղը:— Մի սևահեր տղա է:
— Տերյանին նեղացնում եք,— ասում է ուսուցիչը:
— Ես սիրում եմ մթնշաղը նրբակերտ…
Ու ողջ դասարանը հաղթողի պես ուրախանում է:
Հիմա էլ արտասանում են Թումանյանի քառյակներից, Չարենցից, Դուրյանից… Չորրորդ դասարան, և այսքան ան-

գիրներ, և այսքան սիրով, ավելին՝ մի քիչ շատ իմացողի նկատմամբ մանկական ամենդ խանդով:

Չորրորդցիները բանաստեղծությունը անգիր են սովորում ողջ դասարանով, արտասանում են նոր բանաստեղծությունը, և եթե որևիցե մեկը տանը լավ չի սովորել, ապա արտասանող դասարանը նրան առնում է իր ռիթմի մեջ և լայնահուն ելևէջով ամեն բառը ուղղակի փորագրում է նրա հիշողության մեջ: Այսպես ավելի հեշտ է տրվում անգիրը, ավելի լայն տարածք է մնում արտասանությամբ ապրելու համար: Ուրեմն՝ անգիր անելու սևագործ աշխատանքը աշակերտը կիսով չափ դասարանի հետ է կատարում: Իսկ թե յուրաքանչյուր աշակերտ ինչպես կապրեցնի սովորած բանաստեղծությունը իր մեջ՝ նրա սրտի թելադրանքըն է:

Այս եղանակն ավելի հեշտ ու ավելի արդյունավետ է: Ի՞նչն է լեզու սովորեցնում, եթե ոչ գրականությունը: Լեզու սովորելու համար բավական չէ իմանալ օրենքներ ու ուղղագրական կանոններ: Մենք բառերը ճիշտ ենք գրում սովորույթի ուժով: Ընկեր Նիկողոսյանը հիշեց մեկին (ոչ իր աշակերտներից), որն ասել է. «Ես հայոց լեզու չեմ սիրում»: Նա չի սիրում ոչ թե հայոց լեզուն, այլ՝ հայոց լեզուն՝ իբրև առարկա: Պատճա՞ռը: Միայն կանոններն են սերտել տվել... Մեղավոր են նաև աշակերտի ծնողները: Ինչո՞ւ, որովհետև մայրը և հայրը նույնպես կոչված են զավակին սեր ներշնչելու այն ամենի նկատմամբ, ինչ մենք կոչում ենք մայրենի կամ հայրենի (մայրենի լեզու, հայրենի հող...): Մի օր ընկեր Նիկողոսյանը չորրորդցիներին հանձնարարել է գրի առնել իրենց տեսած ամենալավ երազը: Իր ժողովրդի գրականության նկատմամբ ինչպիսի սեր պետք է ունենար Արմեն Խաչատրյանը, որպեսզի նրան այցելած լինի նման երազ.

«Քնեցի: Մեկ էլ տեսնեմ (պատմում եմ երազս) մի հսկա առջևիցս է գալիս, մինը՝ ետևիցս: Մոտեցա, տեսնեմ՝ Սանասարն ու Բաղդասարն են: Ասացի.

— Այս ո՞ւր եք գնում

— Գնում ենք դեմ խալիֆի, սպանենք՝ մեր մայր Ծովինար խանում բերենք,— պատասխանեցին:

— Գնացեք, բերեք: Ու շուտ արեք, խալիֆը նրա գլուխը կտրելու է:

Քիչ էլ գնացի: Տեսնեմ՝ մի ուրիշ աժդահա է գալիս: Մոտեցա՝ Մհերն էր: Ասացի:

— Ողջո՛ւյն:

— Քե՛զ էլ,— ասաց Մհերը:

— Այս ո՞ւր ես գնում:

— Գնում եմ աղյուծին սպանեմ, որ մարդիկ երթան, հաց բերեն:

Նա էլ գնաց:

Մեկ էլ տեսնեմ՝ արնի հեղեղ է գալիս: Գնացի, տեսնեմ Սասունցի Դավիթը կռիվ է անում Մելիքի դեմ, զարկեց, Թուր Կեծակին կտրեց անցավ քառսուն ջաղցի քար, զարկեց անցավ քառսուն գոմշի կաշին, զարկեց, ճղեց հրեշ Մելիքին:

Արթնացա: Տեսնեմ՝ մայրս գլխավերևս կարդում է «Սասնա ծռերի» այն հատվածները, որ տեսնում էի երազում»:

Երևի թե Արմենն հորինել է այս երազը, միևնույն է գեղեցիկ է և ուրախալի:

Ահա և Արտակ Բաղդասարյանի երազը.

«Ես երազումս թռչում էի երկնքով, թռչում էի թռչունների ու թիթեռների հետ: Ես տեսնում էի փայլուն աստղեր: Ինչ գեղեցիկ էր երկնքում: Այնտեղից տեսնում էի մեր երկիրը՝ մի կլոր գնդի նման: Երբ ցած իջա, պատմեցի մարդկանց այն, ինչ տեսել էի երկնքում, ոչ ոք ինձ չհավատաց, բայց ես հիմա էլ հաճախ երազումս տիեզերք եմ տեսնում»:

Տարբեր են երեխաների երազները, տարբեր են նաև նրանց երազանքները: Երազներից ու երազանքներից բացի նրանք ունեն նաև կոնկրետ մտադրություններ: Օրինակ՝ որոշել են ստեղծել դասարանական ամսագիր, որը դպրոցի նկարչության ուսուցիչ ընկեր Բալայանը կձևավորի: Չորրորդցիները սիրում են նաև երգել:

Երգի ուսուցիչ Արթուր Շահնազարյանը դպրոցում ստեղծել է մի մեծ երգչախումբ: Ուսուցիչը նրանց ոչ միայն ուսուցանում է Կոմիտասի երգերը, այլև պատմում Կոմիտասի կյանքի ու գործունեության մասին:

Ես դուրս եմ գալիս դպրոցից, ու ինձ կարծես ուղեկցում է չորրորդցիների այբուբեն-հիմնը՝ հայրենիքի համար մարտի գնացող զինվորների քայլքի պես: Նաև ինչ-որ տեղ հնչում է Կոմիտասի «Մենք պատրաստ ենք, մենք ուխտել ենք»-ը: Հեռվում Մեծ ու Փոքր Մասիսներն են, որոնց ամեն անգամ նայելիս՝ հիշում ես՝ «Ա՝ մեծատառ, ա՝ փոքրատառ»:

## ԴԱՍԱԿԱՆՆԵՐԻ ԷՋ



# Ավետիք Իսահակյան

1875—1957

## Բինգյոլ

Երբ բաց եղան գարնան կանաչ դռները,
Քնար դարձան աղբյուրները Բինգյոլի.
Ծարվե-շարան անցան զուգված ուղտերը,
Յարս էլ գնաց յայլաները Բինգյոլի:

Անգին յարիս լույս երեսին կարոտ եմ,
Նազուկ մեջքին, ծով-ծամերին կարոտ եմ,
Քաղցր լեզվին, անուշ խոսքին կարոտ եմ,
Սև աչերով էն եղնիկին Բինգյոլի:

Պա՜ղ-պա՜ղ ջրեր, պապակ շուրթըս չի բացվի,
Ծուփ-ծուփ ծաղկունք, լացող աչքս չի բացվի.
Դեռ չտեսած յարիս,— սիրտըս չի բացվի,
Ինձ ի՞նչ, ավա՜ղ, բլբուլները Բինգյոլի:

Մոլորվել եմ, ճամփաներին ծանոթ չեմ,
Բյուր լճերին, գետ ու քարին ծանոթ չեմ.
Ես պանդուխտ եմ, էս տեղերին ծանոթ չեմ,
Քույրիկ, սաա, ո՞րն է ճամփեն Բինգյոլի:

ՀԱՍՄԻԿ ՀԱԿՈԲՅԱՆ

# Թռչում են... մրջյունները



Ես առաջ, մինչև մրջյունների կյանքին ծանոթանալը, ճիշտն ասած, բոլորովին չէի սիրում դրանց՝ ոչ դեղիններին, ոչ սևակարմիրներին և ոչ էլ սևերին, մանավանդ, երբ կոշիկներիս մեջ էին մտնում, ես ոտքերս այնպես էի թափահարում, ասես շիկացած ածուխների վրայով էի քայլում: Եղբայրս ծիծաղում էր, իսկ ես զարմանում էի, թե ինչպես է ժամերով գետնին պառկած դիտում մրջնաբներն ու մրջյուններին: Եվ հորեղբայրս էլ կարծես ուրախ էր եղբորս այդ զբաղմունքի համար և ինքն էլ նորանոր պատմություններ էր անում մրջյունների կյանքից: Նա ասում էր, որ մրջյուններին պետք է պահպանել որովհետև նրանք շատ օգուտ են տալիս անտառին: Հորեղբայրս կենսաբան է, այդ բաները նա լավ է հասկանում: Ասում է, որ մրջյունները փխրեցնում են ու պարարտացնում հողը, լավացնում են հողի օդափոխությունը, ծառերի ու թփերի սերմերն են տեղից տեղ փոխադրում, որից ծառերը շատանում են անտառում, վերաճ է տեղի ունենում, հետո՝ բույսերի փոշոտմանն են մասնակցում, օգնում անտառային սարդերի տարածմանը՝ որոնք էլ անտառային վնասատուներին են ոչնչացնում: Իսկ թե իրենք՝ մրջյուններն ինչքան են ոչնչացնում այդ վնասատուներին... Հորեղբայրս այստեղ միշտ այնպես է ոգևորվում, ասես պատրաստվում է մրցանակ հանձնել մրջյուններին: Եվ իսկապես էլ, հանաք բան չէ՝ անտառային դեղին մըրջյունների երեքից-հինգ մրջնաբունը բավական է մեկ հեկտար անտառը մաքուր պահելու համար:

Արդեն ես էլ եմ սկսել ընկերակցել եղբորս՝ մրջնաբները դիտելիս, իսկ անցյալ օրը հորեղբայրս մեզ ցույց տվեց մրջնաբնի մուտքի անցքը, որը մենք չէինք գտնի, եթե հանկարծ չբացվեր, ներս թողնելով մի քանի մրջյունների, և հետո նորից չփակվեր:

— Այդ անցքը ամուր փակված է պահակ մրջյունի գլխով,— ասաց հորեղբայրս, պահակ մրջյունները շատ զորեղ են, ունեն մեծ բնանցքի տրամագծի մեծության գլուխ: Երբ բնանցքին մոտենում են իրենց ընտանիքի մրջյուններից, պահակն իր բեղիկների օգնությամբ զննում է նրանց, ապա գլուխը ներս քաշելով՝ ճանապարհ է տալիս, իսկ օտար մրջյունների դեպքում գլխով ավելի ամուր է փակում անցքը և օգնության կանչում զինվոր մրջյուններին: Սրանք հարձակվում են օտար մրջյունի վրա ու հեռու քշում

նրան իրենց բնից կամ սպանում, երբ նա համառում ու չի նահանջում:

— Հորեղբայր, իսկ ի՞նչ մրջյուններից է կազմված ընտանիքը,— հետաքրքրվեցի ես:

— Մրջյունների ընտանիքը ստեղծողն ու խնամողը մայրն է: Զվադրությունից անմիջապես հետո ձվերին հսկում են խնամակալ մրջյունները: Եվ եթե լավ են խնամում ու սնում, ապա ծնվում են սերունդ տվող մրջյուններ:

— Հորեղբայր, այդ ի՞նչ ես ասում, ձվերին ո՞նց են սնում,— զարմացա ես:

— Խնամակալ մրջյունները լիզում և սննդահեղուկով պատում են ձվերը, և



Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

սննդահեղուկն էլ ներծծվելով ձվի ներսը՝ սնունդ է դառնում սաղմի համար,— ժպտաց հորեղբայրս:

— Իսկ եթե թույլ են սնում ձվե՞րը,— չհամբերեց եղբայրս:

— Ուրեմն ծնվում են թերսնված, ոչ լիարժեք մրջյուններ,— շարունակեց հորեղբայրս,— այդ թերսնված, ոչ լիարժեք մրջյունները բազմազան աշխատանքներ են կատարում ընտանիքում, նրանցից յուրաքանչյուրն ունի իր հատուկ գործը, որով և զբաղվում է ողջ կյանքի ընթացքում՝ գիշեր ու ցերեկ անդադար: Նրանք բույնն են պատրաստում, մաքրում, խնամում ու պահպանում են ձվերը, թրթուրներին, հարսնյակներին, կերակրում են ձվերին ու թրթուրներին, ամբողջ ընտանիքի համար սնունդ են ճարում, կեր են կուտակում ձմռան համար:

Գնալով մրջյունների կյանքը հետաքրքիր էր դառնում, իսկ այսօր էլ ահա թե ինչի ականատես եղանք. մրջնաբնից՝ իրենց մայրական օջախից, շատ ու շատ մրջյուններ էին հեռանում... թռչելով:

Մինչ այդ տեսել էի միայն քայլող, կեր քարշ տվող մրջյունների: Հորեղբայրս ասաց, որ այդ թռչողները սերունդ տվող մրջյուններն են, նրանք սովորաբար թևավոր են լինում: Ընտանիքի համարյա բոլոր մրջյունները դուրս եկան թռչուններին ճանապարհելու, նույնիսկ մայր մրջյունը՝ «թագուհին», ինչպես նրան կոչեց հորեղբայրս, նա էլ էր ուզում թռչել իր աղջիկների ու տղաների հետ, բայց զինվոր մրջյունները հսկում էին նրան և բռնի ետ տարան բույնը:

Հորեղբայրս ասաց, որ սերունդ տվող մրջյունների թռիչքը սովորաբար տեղի է ունենում խիստ բազմանալուց հետո, հենց այսպիսի՝ անձրևին հաջորդող մի օր, և այդ մասսայական թռիչքները կոչվում են «հարսանեկան թռիչքներ»: Այդ թռիչքների ժամանակ նոր մայրեր են առաջանում, և ստեղծվում է մրջյունների նոր ընտանիք:

ԳՈՒՐԳԵՆ ՍԱՐԳՍՅԱՆ

# Արոտում

Սարի կրծքի կանաչը
Գառան ծնկին է հասել,
Սարի գլխի ծաղկին է
Գառն իր դնչիկը պարզել...

Խոյն ու մաքին անշշուկ
Սարի կուրծքն են արածում,
Գառը կանաչը թողել,
Քարափներն է մագլցում...

Կանաչ սարերն են ելել,
Մոտ են կապույտ երկնքին,
Էլ չեն իջնի այնտեղից
Խոյը, գառներն ու մաքին...



Ծաղկաթերթի շաղիկը
Գառան դնչիկը թրջեց,
Ծաղկափոշով դնչիկր
Դեղին-դեղին ներկվեց:

Գնաց գառը, ջուր խմեց
Զինջ, սառնորակ աղբյուրից,—
Դարձավ աղբյուրն ոսկեջուր
Գառան անուշ համբույրից:



Գիշեր է պարզ ու խաղաղ:
Գառնուկները միամիտ
Աստղերը ծաղիկ կարծել,
Դնչիկներր պարզել վեր,
Աստղ են ուզում արածել...



Համերգում են քաղցրաձայն
Հովվի սրինգն ու քամին,
Սարի կրծքին ննջում են
Խոյը, գառներն ու մաքին:

Ինչքան անուշ են ննջել
Խոյը, գառներն ու մաքին,
Ինքս էլ սարը բարձրանամ,
Զգվեմ գառների կողքին:

# Ուսման և աշխատանքի գերազանցիկը

Համեստ Նազարեթյանը Սպիտակի շրջանի Լեռնավան գյուղի 8-րդ դասարանի աշակերտուհի է, ուսման առաջավոր: Առաջին դասարանից մինչև հիմա նրա լուսանկարր փակցված է դպրոցի «Մեր գերազանցիկները» պատվո տախտակին: Համեստր դպրոցի առաջին դասարանի հոկվարն է, երգի, պարի, ասմունքի խըմբակների ակտիվ մասնակիցը: Շատ լավ արտասանում է Եղիշե Չարենցի, Հովհաննես Շիրազի, Վահագն Դավթյանի, Սիլվա Կապուտիկյանի բանաստեղծությունները: Նրա մայրը կոլտնտեսության փորձաշատ կթվորուհիներից է: Ամեն առավոտ, լույսը դեռ չբացված, Համեստը մոր հետ դուրս է գալիս տնից և քայլերն ուղղում անասնապահական ֆերմա:

— Այսօր վեց կովր ես կթեմ, վեցը՝ դու...,— մի անգամ ասել էր նա մորը: Մայրր համաձայնել էր.

— Չինար ու Սանամ կովերը շատ կաթ են տալիս, դույլը շուտ է լցվում, դրանք ես կկթեմ:

— Լավ,— պատասխանել էր մայրը,— թող այդպես լինի, բայց իմացիր՝ այդ կովերր չար են, դժվար կթվող, շուտ կհոգնես:

— Արդեն սովոր եմ, ինձ հնազանդվում են:

Մտնում են կովանոց: Համեստը՝ դույլով լի գոլ ջուրը մի ձեռքին, սրբիչներր մյուս ձեռքին, մաքրում, սրբում է կովերի կուրծքը և անցնում գործի:



Լուսանկարը՝ ՎԼԱԴԻՄԻՐ ՍԱՐՈՅԱՆԻ

Այդ օրվանից մրցություն է ծավալվել մոր և աղջկա միջև: Պայմանավորվածության համաձայն յուրաքանչյուրը կթում է վեցական կով:

Փրփրադեզ կաթով դույլերը ձեռքին աղջիկը մոտենում է կաթի հաշվառիչին:

— Մորիցդ առաջ ես անցել…,— նայելով ծոցատետրի գրանցումները, ասում է ֆերմայի վարիչը,— շուտ ես ավարտել կիթն ու նույնքան կովից ութ կիլոգրամ ավելի կաթ ես ստացել:

— Վերջերս,— պատմում է ֆերմայի վարիչը,— Համեստի մայրը հիվանդացավ: Աղջիկը մենակ անցավ գործի, կթեց 12 կովը և ապահովեց օրվա կաթի առաջադրանքի կատարումը:

Ֆերմայից տուն գնալով, Համեստը վերցնում է պայուսակը և ընկերների հետ գնում է դասի:

Համեստի հաջողությունները դպրոցում և ֆերմայում իրար չեն զիջում:

ՎԱՆՈՒՇ ԱԹԱՆԵՍՅԱՆ
Սպիտակի շրջանային «Լուսարձակ» թերթի աշխատակից




ԳԱՌՆԻԿ ՄԿՐՏՉՅԱՆ

Ինձ հուշելու նման մեկն հարցրեց մի օր.
— Հեքիաթները բոլոր ո՞վ հորինեց արդյոք:
Եվ շշունջով թաքուն նա ինձ ասաց, թե որ
Մի ծերուկ կա, գիտե՞ս, շատ ուրախ ու անհոգ:

— Նա ապրում է հեռու, իր պալատում շքեղ,
Դուրս չի գալիս երբեք այգիներից իր ճոխ,
Ուր միշտ երգ է թնդում, ուր միշտ ծափ է, ծիծաղ,
Ուր աճում է ամբողջ տարին նուռ ու խաղող:

— Եվ նռները այնտեղ ճեղքվում են միայն
Երջանկության տենդից, ծվագներից խնդուն,
Անձրևում են անվերջ խնձորները պլվան,
Ծավալվում է այնտեղ անպատմելի մի տոն:

Հավատացի, քանզի նա շատ կիրթ էր խոսում,
Մտածեցի՝ ծերը չի տեսել հոգս, մորմոք՝
Իր պալատում հսկա, այգիներում ծաղկուն,
Եվ իրական կյանքը նա չգիտի իրոք:

Լուռ խորհեցի հեգնոտ՝ դրանից է գուցե,
Հեքիաթներում բոլոր ասպետները արի
Կարող են հեշտ ու վարժ ամեն արգելք անցնել,
Անկարելին անել, հաղթանակել դյուրին:

... Եվ մտովի տեսա հորդուն գետեր կաթի,
Հազար հրաշք տեսա, խենթ երաժիշտ հազար,
«Այդ ծերուկին գտնել»,— որոշեցի հաստատ,
Ճոռ է տվել կյանքը, ախր, գլուխն ի վայր:

Ու քայլեցի անվերջ, ու քայլեցի երկար՝
Զարմանալի, չքնաղ տեսիլքներին հլու,
Ընկնում էի, ելնում և չունեի դադար,
Տանում էի ամեն ցավ հնազանդ ու լուռ:

Իմ որոնման ճամփին մի հին հյուղակ գտա,
Տերը շատ էր բարի, ասաց՝ քանի օրով
Ցանկանում ես, մնա, կզրուցենք հանդարտ,
Հանգստացիր նաև, կառնես ուժ ու կորով:

Հյուրընկալ էր անչափ ու բարեսիրտ այնքան,
Որ ցանկացա պատմել հրաշք երկրի մասին,
Բայց և հոգնած էի, քնով ընկա անձայն
Ու վերստին դարձա խենթ երազի գերին:

Սակայն գուցե փոքր-ինչ պատմե՞լ էի նրան...
Երբ արթնացա արդեն չէի հիշում ոչինչ,
Նա ժպտում էր մանրիկ ու խոսում էր դանդաղ,
Գիտե՞ր ես ինչու եմ անցել այդքան ճամփա:

— Աղջիկներին փոքրիկ, տղաներին հրաչ
Ասա, որ դու գտար մի հին, խարխուլ հյուղակ,
Հյուղը տիրոջ համար երազանքի ուժով
Վեհաշուք էր այնպես՝ արքայական դղյակ:

Ասա նաև նրանց՝ չկա ոչ մի գաղտնիք.
Ձեր տան մեջ է ամեն ուրախություն, հրաշք,
Միայն փնտրեք սիրով, սիրով փնտրեք միայն,
Ու բերկրանքի զանգը կղողանջի այնժամ:

Եվ հուշելու նման ձեզ ասում եմ այսօր.
— Թող ուղեկցեն անվերջ ձեզ երազ ու հավատ,
Ու կտեսնեք ձեր շուրջ դուք զարմանքով խորին,
Որ կծաղկեն հազար, հազար վարդ ու հեքիաթ:

Նկարը՝
ՄԻՀՐԱՆ ՔԵՇՕՂԼՅԱՆԻ



## ԶՐՈՒՅՑՆԵՐ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ



**ՌԱՖԱՅԵԼ ԻՇԽԱՆՅԱՆ**
բանասիրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ԶՐՈՒՅՑ ԻՆՆԵՐՈՐԴ

# Վանի Արարատյան թագավորությունը

Ասորեստանի թագավորները Նաիրի—Հայքի բազմաթիվ անջատ իշխանություններից մեկը կոչում էին Ուաուատրի, Ուրուատրու, իսկ հետո՝ **Ուրարտու:** Դա սկզբում մի փոքր թագավորություն էր, նման Հայքի մյուս անջատ թագավորություններին: Գտնվում էր Վանա լճի ափերին: Ապա սկսեց մեծանալ, իր մեջ միավորելով հայոց մյուս իշխանությունները, մինչև որ ամբողջ Նաիրի երկիրը միավորեց և դարձավ հզոր պետություն: Ասորեստանի թագավորները սկսում են ամբողջ Նաիրի—Հայքը անվանել նաև Ուրարտու:

Այս պետությունը շատ մեծ դեր է կատարել հայ ժողովրդի պատմության ընթացքում: Ուստի նախ փորձենք պարզել, թե դա ինչ պետություն էր, որտեղից է ծագել նրա Ուրարտու անունը:

Հնադարյան սեպագիր արձանագրությունների և հայ պատմիչների գրած գրքերի ուսումնասիրումը այս հարցի պատասխանը տալիս է լրիվ չափով:

Օրինակ, Ասորեստանի Ասուրհադդոն 8-րդ թագավորը մ. թ. ա. 681 թ. փորագրված արձանագրությունների մեջ պատմում է մի այսպիսի դեպք. իր երկու եղբայրները իրենց հոր՝ Ասորեստանի թագավոր Սենեքերիմի դեմ դավադրություն են կազմակերպում ու սպանում: Հետո, ըստ այդ արձանագրությունների, նրանք փախչում են Ուրարտու: Աստվածաշնչի մեջ եղած թագավորների 4-րդ գրքում նույնպես գրված է այս դեպքի մասին: Բայց այստեղ ասված է, որ երկու եղբայրները իրենց հորը սպանելով՝ փախել են Արարատի երկիրը: Ապա նույն այս դեպքի մասին գրել է նաև Մովսես Խորենացին. նա ասում է, որ երկու եղբայրները իրենց հորը՝ Սենեքերիմին, սպանելուց հետո «փախան եկան մեզ մոտ»: Պարզ է, որ Խորենացին, գրելով «մեզ մոտ» նկատի ուներ իր հայրենիքը՝ Հայքը: Ուրեմն, ըստ Խորենացու, եղբայրները եկել են Հայք: Վերջապես, նույն դեպքի մասին քիչ փոփոխված պատմըվում է նաև «Սասունցի Դավիթ» դյուցազնավեպում: Այստեղ էլ փախստական եղբայրները գալիս են Հայաստանի Սասուն գավառը:

Այս չորս աղբյուրներից մենք իմանում ենք, որ Ուրարտու, Արարատի երկիր և Հայք միևնույն երկրի անուններն են: Ասորեստանցի Ասուրհադդոնն այն կոչել է Ուրարտու, թագավորների 4-րդ գրքի հրեա հեղինակն այն անվանել է Արարատի երկիր, հայ Խորենացին ու հայոց դյուցազնավեպն էլ ասում են, որ դա Հայքն է:

Մի այլ օրինակ. մ. թ. ա. 6-րդ դարում Պարսկաստանում հիմնվեց Աքեմենյանների թագավորությունը: Այդ թագավորները մի քանի հարյուր տարի արձանագրություններ էին գրում: Նրանց արձա-

նագրությունները երեք լեզվով են գրված՝ հին պարսկերեն, ասուրաբաբելերեն, էլամերեն (Էլամը Պարսկաստանի հարավում գտնվող հին երկիր էր): Այդպես, ամեն մի նախադասություն գրված է այս երեք լեզուներով: Այժմ մեզ հետաքրքրում են այդ արձանագրության հին պարսկական և ասուրաբաբելական մասերը:

Հին պարսիկները Հայքն անվանում էին Արմինա: Պարսից Աքեմենյան թագավորների բազմաթիվ արձանագրություններում Հայաստանը շատ անգամ է հիշատակված **Արմինա** անունով: Եվ ահա արձանագրությունների ասուրաբաբելական մասում **Արմինա-ի** փոխարեն ամեն տեղ գրված է **Ուրարտու** (Ուրաշտու):

Այդ արձանագրություններից ամենամեծը գրել է տվել պարսից Դարեհ Առաջին թագավորը: Փորագրված է մի բարձր ժայռի վրա, որը գտնվում է Պարսկաստանի Բեհիսթուն գյուղի մոտ: Դրա համար արձանագրությունը կոչվում է Բեհիսթունի: Դարեհը շատ անգամ է հիշատակում Հայաստանը, և այստեղ էլ հին պարսկերենում այն միշտ կոչվում է **Արմինա**, իսկ ասուրաբաբելականում՝ **Ուրարտու**: Օրինակ, այդ արձանագրության մեջ կա այսպիսի նախադասություն. «Խոսում է Դարեհ թագավորը. մի պարսիկի, անունը՝ Վաումիսա՝ իմ ծառային, ուղարկեցի Հայաստան»: Հին պարսկերեն նախադասության մեջ գրված է «ուղարկեցի Արմինա», իսկ ասուրաբաբելական միևնույն նախադասության մեջ «ուղարկեցի Ուրարտու»: Եվ այսպես է ամեն տեղ:

Բեհիսթունի արձանագրության մեջ խոսվում է նաև հայերի մասին: Հին պարսկերեն նախադասություններում հայը կոչվում է արմինիյա, իսկ ասուրաբաբելերեն նույն նախադասությունների մեջ՝ **ուրարտայա** (ուրաշտայա): Օրինակ. գրված է «մի հայ անունը Արաքա». հին պարսկերեն մասում այսպես է՝ «Արաքա յը կոչվում է արմինյա, իսկ ասուրաբականում՝ «Արաքա շուումշու ուրարտայա»: Սրանից էլ պարզվում է, որ հին պարսիկները հայերին անվանել են արմինիյա, իսկ ասորեստանցիներն ու բաբելացիները՝ ուրարտայա: Այսինքն՝ մեզ հայտնի է դառնում հայերի անուններից ևս մեկը՝ ուրարտայա, որ նշանակում է ուրարտացի: Նորից հիշենք, որ շատ ժողովուրդներ հայերին կոչել և կոչում են **արմին, արմեն, արման** անվան ձևերից որևէ մեկով, իսկ վրացիները՝ **սոմեխի:** Ահա ասորեստանցիներն ու բաբելացիներն էլ մ. թ. ա. առաջին հազարամյակում հայերին անվանել են **ուրարտայա,** ուրարտացի՝ Վանի թագավորության իրենց տված Ուրարտու անվան համաձայն:

Քննելով պատմությունը՝ պարզում ենք




*Արարատի (Վանի) հայոց թագավորությունը Մեծ Հայքում մ. թ. ա. VIII—VII դարերում*

նաև այլ հարցեր: Մենք արդեն գիտենք, որ Մեծ Հայքը մ. թ. ա. 3-րդ հազարամյակից հայկական ցեղերի տարածման շրջանն էր: Ավելի ուշ Խորենացին գրում էր, որ հայոց Վաղարշակ թագավորը Մեծ Հայքի սահմանները որոշում էր լեզվով. այն վայրերը, որոնցում ժողովուրդը հայերեն էր խոսում, այսինքն՝ որտեղ որ հայեր էին ապրում, թագավորը համարում էր Մեծ Հայքի մեջ մտնող տարածք, իսկ որտեղ լեզուն հայերենը չէր, թագավորը թողնում էր Մեծ Հայքից դուրս: Հին հույն պատմիչ և աշխարհագրագետ Ստրաբոնն էլ Մեծ Հայքի մասին գրել է՝ «Մի երկիր, մի լեզու»:

Ահա ասուրաբաբելերեն Ուրարտու կոչվող պետության թագավորները պատերազմով կամ խաղաղությամբ միավորում էին ճիշտ ու ճիշտ Մեծ Հայքը, նրա 300 հազար քառակուսի կիլոմետր տարածքով: Պարզ է, որ հայկական ցեղերին մի պետության մեջ կուզեին և կարող էին միավորել միայն հայ թագավորները: Այլազգի թագավորներին դա չէր հետաքրքրում, նրանք, ընդհակառակը՝ կուզեին, որ հայերը չմիավորվեին, մնային Նաիրիի անջատ իշխանությունները, քանի որ այդպես ավելի հեշտ էր հաղթել Հայքին: Մենք դեռ կտեսնենք, որ հետագա հայ թագավորները՝ Արտաշեսը, Տիգրան Մեծը, Արշակունիները, Բագրատունիները նույնպես մի գլխավոր նպատակ են ունեցել՝ միավորել Մեծ Հայքը, իսկ միավորելուց հետո՝ պահպանել նրա ամբողջությունը: Երբ Արարատի թագավորությունը ավարտվեց, Մեծ Հայքի ճիշտ նույն տարածքում շարունակվեց հայկական մի այլ թագավորություն՝ Երվանդունիների պետությունը: Մեծ Հայքը մնաց Մեծ Հայք՝ իր նույն 300 հազար քառակուսի կիլոմետր տարածությամբ:

Իսկ որտեղի՞ց է այդ **Ուրարտու** անունը: Գիտնականները ցույց են տվել, որ Ուրարտու, Ուրաշտու, Արարատ նույն անվան տարբեր ձևերն են: Գտնվել են հին հրեական ձեռագրեր, որոնցում նույն երկիրը հրեերեն կոչվում է և Արարատ. և Ուրարատ, և Արարտու: Նախնական ձևը եղել է **Արարատ:** Հայ հին պատմիչները էլ այդ անունով անվանել են Հայքը կամ նրա հարավային մասերը:

**Արարատ** անվան ամենահին ձևն է **Այրարատ:** Այն կազմված է հայերեն **այր** բառի կրկնությունից և **-ատ** ածանցից՝ Այր-այր-ատ: Այր հայերեն նշանակել է արի, ուժեղ, տղամարդ: Հնում մի բառի կրկնությամբ անուններ հաճախ էին ստեղծում: Այդպես էլ ստեղծվել է Այրայրատը: Ուրեմն, Վանա լճի շրջակայքում ստեղծված փոքր հայկական պետության մեջ էր առաջացել Այրայրատ անունը: Հետո ժողովրդի բերանում այն դարձավ Արարատ: Այդ անունն անցավ Հայքից հարավ, հարավ-արևմուտք բընակվող սեմական ժողովուրդներին: Հրեաների լեզվում (հին հրեերենում) արտասանվեց ու գրվեց Արարատ, նաև՝ Ուրարատ կամ Արարտու, իսկ ասուրաբաբելացիների լեզվում փոխվելով հնչեց Ուրարտու, Ուրաշտու:

Երբ Վանի թագավորները միավորեցին ամբողջ Մեծ Հայքը, որպես մի միասնական պետություն, հենց Մեծ Հայքն էլ, այսինքն՝ Նաիրին, օտարները սկսեցին կոչել Արարատ, Արարատի երկիր, Արարատի թագավորություն կամ Ուրարտու: Հետագայում այդ անունը Այրարատ ձևով պահպանվեց միայն Հայաստանի կենտրոնական աշխարհի համար: Այդպես կոչվում էր Մեծ Հայքի 15 աշխարհներից մեկը:

Եվ այսպես՝ Արարատ, Ուրարտու հին Հայաստանի անուններից են: Թեև Վանա լճի շրջակայքում ստեղծված այդ պետության հայ ղեկավարները երկիրը կոչում էին ոչ թե Արարատ կամ Ուրարտու, այլ՝ Վան, Վանի թագավորություն:

Քանի որ Ուրարտու ձևը հայոց լեզվին խորթ է, իսկ Արարատը և Վանը՝ հարազատ, ուստի մենք էլ այսուհետև կգործածենք Արարատի կամ Արարատյան թագավորություն, Վանի թագավորություն անունները:

Դարեհ Առաջինի արձանագրությունը մեզ մի ուրիշ կարևոր տեղեկություն էլ է տալիս: Այնտեղ գրված է, որ հայ, այսինքն՝ ուրարտացի Արաքան Հալդի աստծո որդիներից էր: Սա էլ նշանակում է, որ հայերի գլխավոր աստվածն այն ժամանակ եղել է Հալդին կամ Հալդը: Հալդ աստծուն կոչում էին նաև Խալդ: Գիտնականները ցույց են տվել, որ դա հին հայերի Հայկ աստվածն է, որին վանեցիները և որոշ այլ վայրերի հայեր կոչել են նաև Խալկ:

Կարևոր է նաև Արարատի թագավորության արձանագրությունների լեզվի հարցը, որի մասին կխոսենք հաջորդ անգամ:

(շարունակելի)

# Հայաստան

Իմ Հայաստան արևավառ,
Իմ անձկուն,
Ես քո դուստրն եմ,
Ինչպես իմ մայրիկը:

Դու մի ծով ես,
Ես՝ քո կոհակը,
Դու մի գարուն ես,
Ես՝ քո մեջ ծաղկած մի ծաղիկ:

ՇԱՀՆԱԶԱՐՅԱՆ ԼԻԱՆԱ
Երևանի № 152 միջնակարգ դպրոց, 7-րդ դասարան

ՔՐԻՍՏԻՆԵ ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ, 10 տ., Երևան

ԱՆԱՀԻՏ ԲԵՐԲԵՐՅԱՆ, 14 տ. Երևան
*(Ինքնանկարի մրցույթ)*

ԼՈՒՍԻՆԵ ԴԵՄԻՐՃՅԱՆ, 14 տ. Երևան
*(Ինքնանկարի մրցույթ)*









ՀՐԱՉՅԱ ԲԱՅՐԱՄՅԱՆ
Բանասիրական գիտությունների թեկնածու

# Նոդար Դումբաձե

(1928—1984)

Լենինյան մրցանակի դափնեկիր Նոդար Դումբաձեն գրական ասպարեզ է իջել 40-ական թվականների վերջերին, երբ, դեռևս ուսանող, տպագրեց բանաստեղծություններ, երգիծական մանրապատումներ, պատմվածքներ ու ֆելիետոններ: Գրական առաջին իսկ քայլերով գրավեց ընթերցող հասարակայնության ուշադրությունը: Համընդհանուր ճանաչման արժանացավ 1959 թ., երբ լույս ընծայեց «Ես, տատիկը, Իլիկոն և Իլարիոնը» վիպակը: Դրան հաջորդեցին մի շարք նոր վիպակներ ու վեպեր, ավելի քան երկու տասնյակ պատմվածք, որոնցում գրողն արտացոլում է մեծ աշխարհամարտի և ետպատերազմյան տարիների վրաց իրականությունը, ցույց տալիս վրացիների ազգային բնավորության յուրահատկությունները, երևակայության ուժը, բանաստեղծական ոգին, կենսասիրությունը, հումորի զգացողությունը և այլն: Ասել է, թե՝ նրա ստեղծագործությունը վրացական է ոգով, միջավայրով, կերպարներով, կյանքի օրենքներով ու օրինաչափություններով, բայց բնույթով համամարդկային է, խոր, լուսաճաճանչ, գրավիչ, վարակիչ:

Ն. Դումբաձեն համաժողովրդական սիրո արժանացած գրող է, նրա երկերի պատկառելի մասը նվիրված և ուղղված են երեխաներին: Նա հաճախակի հանդիպումներ էր ունենում նրանց հետ, հետաքրքրվում նրանց կյանքով, օգնում, երբ օգնելու կարիք էին ունենում: Թբիլիսիի կենտրոնում, Վերե գետակի կիրճում կառուցվող և այժմ արդեն

ՆՈԴԱՐ ԴՈՒՄԲԱՁԵ

Նկարը՝ ՄԻՀՐԱՆ ՔԵՇՕՂԼՅԱՆԻ

Նոդար Դումբաձեի անունը կրող «Մզիուրի» («Արևային») պիոներական ավանը հիմնադրվեց գրողի նախաձեռնությամբ և ամենաակտիվ մասնակցությամբ: Ավանը պետք է ունենա իր մանկական քաղաքային կոմիտեն, քաղաքագլուխը, տրանսպորտը, հանգըստյան տներ, գործարաններ, լաբորատորիաներ, արհեստանոցներ, լողավազաններ, զբոսայգիներ և այլն: Արդեն գործում են կանաչ թատրոնը, ճոպանուղին, ատրակցիոն գոտիները, ամառային սրճարանը, մի շարք խաղահրապարակներ, տեղադրված են բազմաթիվ արձանախմբեր ու արձաններ: Շուտով շարք կմտնեն ուսումնադաստիարակչական կենտրոնը, մանկական երկաթուղին, մարզահամալիրը, ջրավազանը, պատանի տեխնիկների տունը, պիոներական ճամբարի համակառույցը և այլ օբյեկտներ: Նախատեսվում է հուշահամալիր՝ գրողի ստեղծագործությունների մոտիվներով: Սա նշանակում է, որականավոր գրողը մահից հետո էլ հավերժ կապրի իր սքանչելի հերոսների հետ ու նրանց ընկերակցությամբ: Ավանը կընդգրկի կենդանաբանական և բուսաբանական այգիները: Կանցնի մի քանի տարի, և համալիրը կդառնա դեռահասների աշխատանքային, բարոյական, գեղագիտական և ֆիզիկական դաստիարակության լավագույն օջախը: Բարեբախտաբար հեքիաթային աշխարհի հիմնադիրն ականատես եղավ, թե ինչպես է կառուցվում, օրեցօր գեղեցկանում ու ընդարձակվում ավանը, որի ստեղծման մասին խնդրագիրը նա վերջացրել էր այսպես. «Չգիտեմ ինչպես կվարվեն մյուսները, սակայն ես հաճույքով կդառնայի այդ արևային ավանի առաջին մեծահասակ քաղաքացիներից մեկը»: Կատարված է գրողի նաև այդ ցանկությունը. նրա անձյունն ամփոփված է համալիրի կենտրոնական մուտքի աջակողմյան բարձրադիր վայրում:



Նոդար Դումբաձեն ամբողջ հոգով կապված էր Հայաստանի, հայ մշակույթի ու գրականության հետ: Նա անչափ ուրախանում, ոգևորվում էր մեր ժողովրդի հաջողություններով ու նվաճումներով, հարազատի սիրով մասնակցում էր մեր ուրախություններին, եղբայրաբար կիսում մեր վիշտը: Նրա գրեթե բոլոր երկերում ներկայացված են հայ մարդկանց դրական կերպարներ: Դրանով Դումբաձեն օրինակ տվեց, թե ինչ են նշանակում ժողովուրդների բարեկամությունը, մարդկային-ընկերական հարաբերությունները:

Սիրո գինը սերն է, ասում է իմաստությունը. ուրեմն, օրինաչափ է, որ հայ հասարակությունն սկզբից ի վեր ուշադրությամբ հետևել է Ն. Դումբաձեի գրական առաջընթացին: Նրա շատ երկեր թարգմանված են հայերեն, նա Հայաստանում նույնքան սիրելի է, հայի սրտին նույնքան հարազատ գրող, որքան իր հայրենի Վրաստանում:

**Երեք տեսակ սատանա կա:**

**Մեկը ցցուն ականջներ ունի, այծի կճղակներ, այծի մորուք, ճկույթաչափ եղջյուրներ և խաղացկուն, շիլ աչքեր: Շատ նման է այծի, բայց սատանա է: Ինչ ձայնով ուզում է՝ այն ձայնով էլ խոսում է. կնոջ ձայնով, տղամարդու ձայնով, երեխայի ձայնով, կենդանիների ձայնով, թռչունների ձայնով էլ հո խոսում է ու խոսում:**

**Երկրորդ սատանան պոչավոր է, անճոռնի: Ներբանները թարս են, քիթը կեռ, ունի մեկ ատամ, ճակատին՝ զմրուխտի նման կանաչ մի աչք և փոչոտ մարմին:**

**Երրորդը չորս ոտք ունի, չորս ձեռք՝ վեցական մատներով, երկու երես ունի, ամեն երեսին՝ չորս աչք, մարմնի երկու կողմից՝ երկու փոր, ամեն փորին՝ մեկ**

պորտ, բայց մեջք չունի: Նույնն է թե առջևից, թե ետևից: Մի խոսքով, ոնց որ երկու սատանա մեջքով իրար կպցրած:
Մի ուրիշ տեսակ սատանա էլ կա, բայց նրա մասին՝ վերջում:
Առաջին երեք տեսակ սատանաներից ոչ մեկին ես չեմ տեսել: Իմ Մանավելա պապն է տեսել իր սեփական աչքերով:
Այծանմանին՝ Արջուտթալում:
Պոչավոր-փոչոտին՝ Լաշխողելեում:
Երկփոր-երկպորտանուն՝ Սաթափլիա սարում:
Դրանց հետ ունեցած հանդիպումից պապիս վրա սոսկալի խարաններ են մընացել:

. . . . . . . . .

— Էսպես ուրեմն, բալա, գնացել էի Արջուտթալա, որ քթոցի համար քրծեն հավաքեմ: Իրիկնամուտ էր, մութը վրա էր հասնում: Աշխատանքս վերջացրի, բեռս կապեցի, լվացվեցի, սալաքարին նստեցի, չիբուխս սամսուն լցրի ու ասի՝ ծխեմ, քիչ շունչ առնեմ ու գնամ: Բալիս ասեմ, կայծքարը չխկացրի ու մին էլ էն տեսա՝ անիծվածը պպզել է կողքիս՝ քարի վրա: Դե պարզ է, ցաքատը վաղուց քամարիս տակ էի խրել…
— Թուհ, սատանա,— բացականչեցի, տեղիցս վեր թռա, երեք անգամ խաչ հանեցի ու ձեռքս տարա ցաքատին:
— Սատանա էլ ես ու շան որդի էլ,— ասաց նա:
— Ո՞վ ես,— գոչեցի ու նորից ուզեցի խաչակնքել երեսս, բայց պատկերացնո՞ւմ ես, ամեն ինչ թարս եմ անում՝ ձեռքս ճակատիս տանելու փոխարեն պորտիս եմ տանում, իսկ էն անտերը նայում է ինձ ու հռհռում:
— Փըշտ,— գոռացի ես, բայց ինձ է թվում՝ գոռում եմ, իրականում բերանս անձայն բացուխուփ եմ անում:
— Մանավելա, ատծու մեղք, ցաքատդ ցցի ու արի մոտս նստի, բան ունեմ ասելու:
— Ի՞նչ պիտի ասես, այ սատանի ձագ,— պատասխանում եմ ու մտքումս մտածում, թե կնեղանա, բայց պատկերացնո՞ւմ ես, դա նրա համար նույնն էր, թե, օրինակ, հիմի դու վեր կենաս ու ինձ ասես՝ Մանավելա՝ որդի Աֆրասիոնի: Ի՞նչ անեի, նստեցի: Նստեցի թե չէ, սկըսեց ինձ մշակել:
— Մանավելա Յինցածե, դու լավ տըղամարդ ես, գեղեցիկ, ուժեղ, պարթև… Ինչի՞ս վրա ես ծիծաղում, այ շան որդի, հիմա որ տեսնում ես, հո էսպիսի՞ն չեմ եղել: Ես, ախր, մի ժամանակ աստղերի հետ էի խաղում… Հա՛, ինչ եմ ուզում ասել. դու ինձ լավ փեսա կլինես: Ամուսնացիր աղջկաս հետ: Կապրես՝ ոնց որ հեքիաթում: Ոսկու և արծաթի մեջ կլողացնեմ քեզ: Կուզես՝ աղավարի ոտքդ դիր ոտքիդ, պառկիր ընկուզենու շվաքում ու քեզ համար «Կրիմանճուլի» ու «Խասաբեգուրա» երգիր:
— Նախ ասա՝ մա՞րդ ես, թե՞ սատանա, հետո կխոսենք:
— Մարդ եմ, Մանավելա, չե՞ս տեսնում, որ խոսում եմ քեզ հետ:
— Թե մարդ ես, ինչո՞ւ ես այծի նըման,— հարցնում եմ, իսկ սառը քրտինքը առվակի նման հոսում է ողնաշարս ի վար:
— Էհ, բան ասացիր, քի՞չ մարդիկ կան, որ էշի են նման կամ խոզի, բայց ո՞վ է բացեիբաց ասում,— այսպես պատասխանեց աստծո երեսից ընկածը, և ես չըկարողացա առարկել, որովհետև շատ ճիշտ էր ասում:
— Հայպա ցույց տուր աղջկադ:—Խոսքըս դեռ բերանումս՝ սատանան մկկաց: Մկկալուն պես, բալիս ասեմ, ժայռը բացվեց ու, տեր աստված, ներսից ի՞նչ դուրս եկավ, ի՞նչ դուրս եկավ… Բախմարոյի գագաթից արևը որ ծիկրակում է, տեսե՞լ ես, որդի: Չես տեսել: Խավար գիշերը երբ լիալուսինը դուրս է գալիս, տեսե՞լ ես, որդի: Չես տեսել: Դաշտում ցողաթաթախ վարդի անթիվ անհամար կոկոնները, որ միանգամից բացվում են ու ժպտում, տեսե՞լ ես, որդի: Չես տեսել:
Խոսեց հետս, բայց ոնց խոսեց… Երբ բյուրհազար կուլաներից կլկլալով թափվում է ալ կարմիր գինին, լսե՞լ ես, որդի: Չես լսել: Երբ Գուրիայում գարնան երևկոները սոխակները, դեղձանիկները ու ճայերը միասին գեղգեղում են, լսե՞լ ես, որդի: Չե՞ս լսել: Ահա, էդ հրաշք դշխուհին կանգնել էր իր այլանդակ հոր կողքին…
— Հը՞, ի՞նչ կասես, քոռաչք Մանավելա,— հարցրեց ինձ:
Ի՞նչ կարող էի ասել: Շատ էլ ճիգ ու ջանք թափեցի՝ որևէ բան ասեմ, բայց զգացի, որ լեզուս փորս է ընկել ու հասել պորտիս տակը:
— Դու սրան հենց այնպես ինձ չես տա, փոխարենը ինչ-որ բան ես պահանջելու:— Հազիվհազ կարողացա բարբառել, երբ լեզուս տեղն ընկավ:

— Քեզնից ի՞նչ պահանջեմ, այ մուրացկան: Օրվա աշխատանքիդ դիմաց երկու հարյուր գրամ փուչ սիմինդ ես ստանում կոլխոզից, ի՞նչ կարող ես տալ: Հոգիդ պիտի ծախես ինձ...

— Դու ինձ ո՞ւմ տեղն ես դրել, աստծո նզովյալ: Հոգիդ պիտի ծախես: Չէ՞ մի,— գոչեցի ես, ցաքատը վրա բերի ու էն է՝ գլուխը պիտի թռցնեի, երբ...

Պապս շալվարի փողքը բարձրացրեց և սրնքամսի մեջ երկու մատնաչափ խորության սպին ցույց տվեց:

— Իսկույն չքվեց պլանդակը: Ցաքատըս զրնգաց սալաքարին ու խրվեց ահա այստեղ: Արյունս շատրվանեց, իսկ քո պապ Մանավելան ուշակորույս փռվեց գետնին: Մինչև հիմա էլ լսում եմ էն պիղծ արարածի ճիչախառն քրքիջը. «Հոգիդ պինդ պահի, մուրացկան Մանավելա, հոգիդ պինդ պահի, որ չփախչի հանկարծ...»:

Ուրիշ ոչինչ չեմ հիշում:

Երկրորդ սատանային հանդիպեցի Լաշիսղելեում:

Միրոն որսալու ժամանակն էր: Մի գիշեր գնացի այնտեղ, ուր ձկնկիթ դնելու համար ձուկը Գուբազողլից անցնում է Լաշե: Ջրապատվարը շինեցի այնպես, որ կարողանայի հսկել վտառի շարժումը: Ամեն ինչ նախապատրաստեցի, հետո նստեցի շունչ առնելու. չիբուխս թութուն լցրի ու պարզորոշ լսեցի, թե ինչպես է ձուկը թափով վարսում: Միրոնն սկսել էր անցումը: Ուռկանը վերցրի, որ նետեմ, բայց չգիտեմ ինչու այդ պահին շուրջս նայեցի: Եվ ի՞նչ: Բալիս ասեմ, այլանդակ շան որդին պպզել է քթիս տակ և միակ կանաչ աչքը այնպես հառել վրաս, ասես շեշտակի նայելով ուզում է շաղափել ինձ:

Լաշիսղելեի սատանան նույնպես իր արևատես դստերը կնության է առաջարկում Մանավելա պապիս, փոխարենը պահանջում հոգին, խոստանալով կոլտնտեսության նախագահի պաշտոնն ու մի բաթման ոսկի:

— Սա իմ ձեռքիցը ողջառողջ չի պրծնելու,— ասացի ու ցանցը շպրտեցի վրեն: Ես քաշում եմ, նա քաշում է: Ես քաշում եմ, նա քաշում է: Բայց դե ո՞ւր պիտի գնար: Ցանցը իր միակ կեռ ատամով էր պահում: Ձեռքս մտցրի բերանը, որ ցանցը քաշեմ հանեմ ատամից...— պապս ցույց տվեց աջ ձեռքի ճկույթն ու բութը,— բայց էս երկու մատից բացի ուրիշ ոչինչ չկարողացա բերանից հանել: Կործանեց ինձ գարշելին, բայց էլի փառք աստծո, որ երեք մատով պրծա: Շնորհակալ եմ նաև դրա համար...

Երրորդ կամ Ետևառաջ սատանան պապիս հանդիպել է Սաթափլիա սարում, երբ պապս գնացած է եղել փեթակներն ստուգելու: Սա նույնպես իր գեղեցկուհի դստերը կնության է առաջարկել, նույնպես հոգին առնելու պայմանով: Միաժամանակ խոստացել է Չոխատաուրիի շրջկոմի առաջին քարտուղարի պաշտոնը: Պապս մերժել է ու նոր, ավելի սարսափելի խարան ստացել:

— Աստծո նզովյալ Մանավելա, աչքերդ պիտի հանեմ, որ քոռանաս ու չըտեսնես աղջկա գեղեցկությունը:— Այսպես հոխորտաց ու մատները կեռ արած խրեց աչքս: Հասցրի ձեռքով ծածկել դեմքս, բայց մոռացել էի, որ երկու մատ ունեմ ընդամենը: Ձախ աչքս փրկեցի, աջը՝ կերավ անտերը:

— Ինչ ես քեզուքեզ ծիծաղում, այ կընիկ, երեխեն էլ կկարծի սուտ եմ ասում,— անսպասելիորեն ներս մտած տատիս հանդիմանեց պապս:

— Չհավատաս, նենա, էնպես պլպլկերպված էր էս հերամեռը, երբ ինձ հարս բերեց: Ինքն է չարք ու սատանա: Ի՞նչ սատանա կգա սրա հախիցը:— Տատս դատարկ սափորը վերցնում է սեղանից ու գնում գինի բերելու:

— Սատանաներին ինչո՞ւ էիր մերժում, պապ, ամուսնանայիր նրանցից մեկի աղջկա հետ՝ հիմա առաջին մարդը կլինեիր գյուղում,— գինով մշուշված՝ ասում եմ ես:

— Բա հոգի՞ս, այ շան թուլա,— բարկանում է պապս ու ունեցած երկու մատով բամփում գլխիս:

— Ի՞, մեծ բան է, էդ ինչ մի հոգի ունես որ...,— պատասխանում եմ հեգնախառն:

— Եթե ամուսնանայի, հիմա դու սատանի թոռ կլինեիր,— ասում է պապս և միակ առողջ աչքը մաուզերի փողի նման ուղղում ճակատիս:

— Այդ մասին չէի մտածել, պապ,— ներողություն եմ խնդրում:

— Չես մտածել, մինչդեռ ժամանակն է, որ քո տարիքի քուռակը մտածի, նոր խոսի,— նախատում է հարբած Մանավելա պապս և շրջում բուխարու միջի այրվող կոճղը:

Ներս է մտնում տատս և պռնկեպռուն



լիքը սափորը դնում սեղանին:

Հանկարծ այդ սափորից դուրս է գալիս բոլորովին փոքրիկ մի սատանա: Այնքան փոքրիկ, որ տեղավորվում է ափիս մեջ: Մինչդեռ քիթը մեծ է և կարտոֆիլի նըման ծեփված է նրա կարմիր, պոմիդորի պես հասած երեսին: Մարմինը բոլորովին մերկ է, վարդագույն և թափանցիկ: Նայում եմ, բայց չեմ տարբերակում՝ աղջի՞կ է, թե տղա: Ամեն ձեռքին յոթական մատ ունի, թե ոտքերինը քանիսն են՝ դըժվարանում եմ ասել, որովհետև փայտե փոքրիկ քոշեր է հագել և ոչինչ չի երևում: Այս սատանային պապս չի տեսնում, որովհետև սա իմ սատանան է, իմ սեփականը: Ահա նա դուրս է թռչում սափորից, կանգնում իմ բաժակի պռնկին ու ժպտալով ասում.

— Մանավելայի թոռ, հոգիդ տուր ինձ, և ես կպատմեմ ճշմարտությունը, ինչպես որ եղել է…:— Եվ այնպես բարի ու քաղցըր է ժպտում, որ հոգիդ չէ, մարմինդ էլ չես մերժի: Ինքն էլ է հարբած:

— Վերցրու, քեզ լինի, ինձ իսկի պետք չէ,— պատասխանում եմ կակազելով:

Եվ իմ սատանան սկսում է պատմել:

. . . . . . .

Մանավելա Յինցաձեին Ցալիկաշվիլի եղբայրները տարան անտառ և գամեցին հսկայական կաղնուն: Երեք հոգի էին Ցալիկաշվիլիները՝ Փրիդոնը, Մամիան և Կացիան:

Մանավելա Յինցաձեն փախցնում է կրտսեր Ցալիկաշվիլու՝ Կացիայի հարսնացուին՝ Թինաթին Նակաշիձեին, որի հետ նա նշանված էր օրորոցից: Ասել, թե փախցնում է, ճիշտ չէր լինի: Բախմարոյում, տոնահանդեսի ժամանակ Թինաթին Նակաշիձեն տեսնում է նրան՝ սև չուխայով, ձյունաճերմակ Ցամիլին հեծած, պարթևահասակ Մանավելա Յինցաձեին: Սկզբում, իր կայտառ հովատակով սա առաջինը հատեց հինգվերստանոց արշավի վերջնագիծը: Այնուհետև, սրընթաց վազքապահին, ատրճանակի մի կրակոցով փշուր-փշուր արեց չորսսաժենանոց ձողի ծայրին ամրացրած բրոլե թասը: Եվ, վերջապես, մինչև գոտկատեղը մերկ, առանց շունչ առնելու մագլցեց երեքսաժենանոց եղևնու յուղած սյունը, վերցրեց գագաթի արծաթե գավաթը և բազմության ուրախ բացականչությունների ներքո մոտեցավ արևի պես ճառագող Թինաթին Նակաշիձեին, ծընրադրեց նրա առաջ, համբուրեց շորի

քղանցքը և արծաթե գավաթը հանձնեց շառագունած ու երջանիկ աղջկան:

Այդ ժամանակ դեռ չէր լրացել Թինաթին Նակաշիձեի տասնհինգ տարին, իսկ Մանավելա Ցինցաձեն տասնինն էր և ճիշտ որ աստղերի հետ էր խաղում:

Մեկ շաբաթ անց Մանավելա Ցինցաձեն նամակ ստացավ Նակաշիձեի դուստր Թինաթինից.

Տեսնո՞ւմ ես դու, հոգիս, աշխարհն
ինչ է անում ինձ ու քեզ հետ.
Մութն է աչքիս, թեկուզ շուրջս ծփա
անծայր լույսի մի գետ:
Գիտուններն են ճիշտը տեսնում և
աշխարհին նայում են խեթ,
Ախ, առանց քեզ կյանքն ինձ համար
տանջանք է ժանտ ու դառնաղետ:

Նամակը ցնցեց Մանավելա Ցինցաձեին. խենթացավ երջանկությունից, մի բուռ հող կերավ՝ տղամարդկությունը բռնեց, գլխիցը ձեռ քաշեց ու պատասխան նամակ գրեց Թինաթին Նակաշիձեին.

Ես հպեցի իմ աչքերին նրա գրած
նամակը թանկ,
Ու գրեցի. «Շարմաղ լուսին, քեզ չի
հաղթի արևն էլ բարկ,
Աստված չանի, թե ունենամ քեզ
անվայել միտում ու վարք.
Կարծես չքնաղ երազ է այս, մի՞թե
իրոք ես առա կյանք»:

Տիփոբե* ամսի 14-ին, գիշերը, երբ լուսնի լույսը ողողել էր շուրջբոլորը, Թինաթին Նակաշիձեն եկավ ու սպասեց Ջվարցա տանող խաչմերուկի վիթխարի կաղնու տակ: Եկավ սիրով, կամքն յուր և ոչ թե զոռով: Եկավ՝ հագին մի վերնաշապիկ և բոկոտն: Մանավելա Ցինցաձեն իր կյանքին ու արևին փաթաթեց սև յափնջու մեջ, նստեցրեց անթամբ նժույգին ու փախցրեց...

Շալիկաշվիլի եղբայրները հետապնդեցին Մանավելա Ցինցաձեին:

Փոխհրաձգություն էր գնում: Շալիկաշվիլիների գնդակից տապալվեց Մանավելայի ձին: Ու մինչ հեծյալը կփորձեր ոտքի կանգնել՝ երեքով գիշանգղի նման կանգնեցին գլխավերևը:

Շալիկաշվիլի եղբայրները Մանավելա Ցինցաձեին տարան անտառ և գամեցին հսկայական կաղնու բնին:

— Քննոտ Մանավելա, հալա մի ցույց տուր էն ձեռքդ, որով նամակ գրեցիր իմ եղբոր հարսնացուին,— ասաց ավագ Շալիկաշվիլին՝ Փրիդոնը:

Մանավելայի կապված ձեռքերը այնպես էին թմրել, որ ոչինչ չէր զգում: Փրիդոն Շալիկաշվիլին շրջանցեց ծառը և թրի հարվածով սառնասրտորեն մեկմեկ հատեց աջ ձեռքի բութը, ցուցամատըն ու միջնամատը: Արյունը ժայթքեց շատրվանի նման: Մանավելա Ցինցաձեն ոչ թե ցավ, այլ թեթևություն զգաց ու երանությամբ օ՜խ արեց:

— Հեյ, չխեղես իգիթին,— հեգնեց Փրիդոն Շալիկաշվիլին:

— Իսկ հիմա ցույց տուր էն ոտքդ, որ առաջինը պիտի դնեիր Նակաշիձեների շեմքից ներս,— ասաց միջնեկ Շալիկաշվիլին՝ Մամիան, և թուրը դուրս քաշեց պատյանից:

Մանավելայի աչքերը մթնեցին:

— Ինձ մի խեղեք, թավադորդի,— խնդրեց նա:

— Դու պիտի վաղուց խեղված լինեիր, որ Բախմարոյում չմասնակցեիր ձիարշավին,— քրքջաց Մամիա Շալիկաշվիլին և թրով զարկեց աջ ծնկին:

Պողպատը կիսեց ոսկորը: Մանավելայի սիրտը մարեց:

— Ուշքի եկա՞ր,— իր հերթին հարցրեց կրտսեր Շալիկաշվիլին, երբ Մանավելան ի վերջո բացեց աչքերը:— Իսկ հիմա ցույց տուր էն աչքդ, որ առաջին անգամ տնկեցիր իմ հարսնացու Թինաթինի վրա...:— Մանավելան ամբողջ մարմնով սարսռաց, լեզուն կապ ընկավ: Կացիան սպասեց, մինչև որ զոհը կարողացավ խոսել:

— Ի՞նչ եք անում, այ անաստվածներ, իսկի Քրիստոսին էսպես չեն տանջել: Ախըր, ես ի՞նչ մեղք եմ գործել...

— Աչքդ ցույց տուր, մուրացկան Մանավելա:

— Արևս մի խավարեցրու, Կացիա,— Մանավելան ջանում էր չարտասվել, բայց արցունքներն իրենց իրենց հոսում էին: Ապարդյուն անցան Մանավելայի փորձերը: Կացիա Շալիկաշվիլին թրի ծայրը խրեց աջ աչքի տակը և դանդաղ խառնեց...

Ջվարցմեցիները ծառին գամված կես մարդ գտան խոր անտառում:

Ուղիղ կես տարի Մանավելա Ցինցաձեն չկարողացավ վեր կենալ անկողնուց: Այդ ամբողջ ընթացքում նա ոչ որևէ խոսք ասաց, ոչ էլ գոնե հոգոց հանեց: Վեց ա-

* *Տիփոբե— Հոկտեմբեր ամսանունն է, գործածվում է միայն Գուրիայում:*

միս անց, երբ համագյուղացիները ընրբանցքներից մեկում տեսան խեղված ու կիսամարդ դարձած Մանավելայինՙ անունը կնքեցին «Անմահ Մանավելա»: Այդ անունը ընդմիշտ կպավ Մանավելա Ցինցաձեին:

Մեկ տարի անց, հարևան գյուղի բընակիչ Թավբերիձեները, որ ապրում էին Արջուտթալայի մյուս փեշին, բացատում գտան Փրիդոն Շալիկաշվիլու դիակը: Նրա դեմքը ապշահար էր, աչքերըՙ բաց: Ոչ գնդակի հետք կար, ոչՙ թրի: Վախից սիրտը պայթել էր:

— Կեսգիշերին բացատի կողմից խըռխըռոց լսեցի, կարծեցի արջ է,— պատմում էր Լևարսի Թավբերիձեն:

Եվս մեկ տարի անց Լաշիսղելեում գըտան Մամուկա Շալիկաշվիլու դինՙ թրի մի հարվածով ուսից մինչև պորտը ճեղքված: Կասկած չկար այլևս... «Անմահ Մանավելան» խմում էր Շալիկաշվիլիների արյունը:

Մանավելա Անմահը փախավ անտառ:

Եղբայրների վրեժն իր վրա վերցրած Կացիա Շալիկաշվիլուն ատրաժնիկները գտան Սաթափլիա սարումՙ բերդանկայի գնդակից ճակատը ջնջխված: Մարմինն ընկած էր ճիշտ այն լորենու տակ, որտեղ «Ետևառաջ» սատանան հանել էր Մանավելա Ցինցաձեի աչքը:

Անմահ Մանավելան 1918 թվականի գարնանը ընդմիշտ թողեց անտառը:

— Հեղափոխությունը ամենքին ամեն ինչի համար ներեց, քո պապը ի՞նչ էր արել,— ասում է իմ փոքրիկ սատանան և քթի տակ ծիծաղում:

— Թինաթին, այ կնիկ, մի կուլա աղեսա էլ բեր, թե չէ չորանում է էս անտեր կոկորդս,— իմ տատ Թինաթինին է խնդրում պապս:

Տատս գինին բերում է ու մեղրածոր ժպիտը դեմքին նստում պապիս կողքին:

Պապս վերստին սկսում է սատանաների պատմությունը: Նա չգիտե, որ ես իմ սեփական սատանան ունեմ, որ, ահա, բաժակիս պռնկին պպզած, կամացուկ ծիծաղում է պապիս գինովության վրա և ամեն ինչ ճշմարտորեն պատմում ինձ... Կեսգիշերն անց իմ փոքրիկ սատանան մտնում է սափորը, և մենք բոլորսՙ սատանաներով, պապիկ-տատիկով միասին քնում ենք մարող բուխարու առաջ:

Վրացերենից թարգմանեց
ՀՐԱՉՅԱ ԲԱՅՐԱՄՅԱՆԸ



Նկարները՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Իր մանկության տարիներին ո՞վ չի հրապուրվել անգլիացի հռչակավոր գրող Դանիել Դեֆոյի «Ռոբինզոն Կրուզո» հրաշալի գրքով: Ինչպես հայտնի է, այդ պատմության հիմքում ընկած են շոտլանդացի նավաստի Ալեքսանդր Սելքիրկի արկածները: Նավապետի հետ վիճելու պատճառով այդ նավաստին ափ իջեցվեց Խաղաղ օվկիանոսի Խուան-Ֆերնանդես կղզիախմբի Մաս-ա-տյերա անմարդաբնակ կղզում, Չիլիի ափերից 560 կմ հեռավորության վրա: Այդ կղզում Սելքիրկը միայնության մեջ ապրեց 4 տարի և 4 ամիս:

Սակայն Դանիել Դեֆոն իր վեպի համար հիմք ընդունելով այս իրական պատմությունը, փաստորեն զգալիորեն փոփոխել է այն: Եվ քանի որ Դանիել Դեֆոն վատ գիտեր բընությունը, հատկապես բուսական աշխարհը, ապա նա ստիպված էր իր հերոսի համար նախնական պայմաններ ստեղծել:

Ինչպես հայտնի է, նրանց նավը նստել էր ծանծաղուտում, և Ռոբինզոնը հնարավորություն ունեցավ 11 անգամ այցելել նավ, ամեն անգամ այնտեղից բերելով առաջին անհրաժեշտության զանազան իրեր՝ սննդամթերք, ատաղձագործի գործիքներ, գինի, հրացաններ, վառոդ, ատրճանակներ, տարբեր տեսակի հագուստներ, երկաթյա նիզեր, նույնիսկ՝ վերմակներ, ներքնակներ, բարձեր: Ինչպես տեսնում ենք, փաստորեն սկզբնական շրջանում Ռոբինզոնը ապահովված էր գրեթե ամեն ինչով, և պատահական չէ, որ նա առանձնապես մտահոգված չէր իր վաղվա օրով և անհրաժեշտությունից դրդված կղզին ուսումնասիրեց նավաբեկությունից տասն ամիս հետո միայն: Սակայն նրա գիտելիքները բավարար չէին կենդանի բնությունից օգտըվելու համար: Մինչդեռ Մաս-ա-տյերա կըղզին այն ժամանակ աչքի էր ընկնում արևադարձային փարթամ բուսականությամբ: Հետագայում կղզու կենդանի բնությանը մեծ հարված հասցվեց: 18—19-րդ դարերում կըղզին աքսորավայր էր դարձել: Կղզի բերված այծերն ու ճագարները փաստորեն ամայացրին բնությունը: Ներկայումս Խուան-Ֆերնանդես կղզիախումբը անապատ է դարձել:

Իսկ այն ժամանակ Ռոբինզոնը կղզում ամեն ինչ կարող էր գտնել, եթե միայն լավ ճանաչեր կենդանի բնությունը: Մինչդեռ, ինչպես գրքի հերոսն է խոստովանում, ինքը շատ վատ գիտեր բուսական աշխարհը և նույնիսկ Բրազիլիայում եղած ժամանակ հարկ չէր համարել ուսումնասիրել տեղական ամենասովորական դաշտային բույսերը: Դանիել Դեֆոն, գրելով այդ հիանալի գիրքը, մեծ բացթողում է թույլ տվել, չուսումնասիրելով Խուան-Ֆերնանդես կղզիախմբի բնությունը: Հետևանքը եղել է այն, որ նա կղզիների բուսական աշխարհի համար տեղական տեսակներ է համարում... Նարինջի և կիտրոնի ծառերը, կուլտուրական խաղողը, կոկոսյան արմավենին և մի շարք այլ բույսեր, որոնք Հարավային Ամերիկայում մշակովի բույսեր են՝ բերված այլ երկրներից: Նարինջի և կիտրոնի հայրենիքը հարավ-արևելյան Ասիան է, կուլտուրական խաղողինը՝ Միջագետքը և պատմական Հայաստանը, կոկոսյան արմավենունը՝ Օվկիանիան, Պոլինեզիան, Ինդոնեզիան և դրանց հարակից շրջանները:

Ռոբինզոն Կրուզոն հետագայում շատ հետևողներ ունեցավ: Կամպեն գրեց «Նոր Ռոբինզոն», Վիսսը՝ «Շվեյցարական Ռոբինզոն» վեպերը և այլն: Ընդհանրապես Ռոբինզոն անունը ամենուրեք ընդունվեց որպես միայնակ, հասարակությունից և մարդկային քաղաքակրթությունից կտրված անհատի կամ մի խումբ մարդկանց դեգերումների խորհըրդանիշ: Ռոբինզոններ էին նաև Ժյուլ-Վեռնի «Խորհրդավոր կղզին» վեպի հինգ հերոսները: Սակայն, ի տարբերություն Դանիել Դեֆոյի, Ժյուլ Վեռնը հիանալի գիտեր հարավային լայնության 37-րդ հորիզոնականի բընությունը և հատկապես բուսական ու կենդանական աշխարհը: Ճիշտ է, նավապետ Նեմոն նրանց որոշ անհրաժեշտ իրեր էր մատակարարում, այնուհանդերձ, ինչպես հիշում ենք, կղզիաբնակ գաղութարարները իրենք էին հայթայթում ամեն ինչ, օգտագործելով հարուստ բնության անսպառ հնարավորությունները: Դա չափազանց հետաքրքիր և ուսանելի է դպրոցականների համար:

Նույնը պետք է ասել նաև Լոնգֆելլոյի «Հայավաթի երգը» ստեղծագործության մասին: Նրա հերոսները՝ հնդկացիները, հրաշալի գիտեն բնությունը, որից վերցնում են իրենց անհրաժեշտ ամեն ինչ: Եթե ռոբինզոններ դառնային հնդկացիները, ընկնեին այնպիսի անմարդաբնակ կղզի, որը աչքի ընկներ հարուստ բնությամբ, ապա նրանք շատ հեշտությամբ կհարմարվեին միայնակ կյանքին և ոչ մի դժվարություն չէին կրի: Լոնգֆելլոն նկարագրում է, թե ինչպես են հնդկացիները իրենց անհրաժեշտ ամեն բան հայթայթում բնությունից: Պիրոգ պատրաստելու համար նրանք վերցնում են կեչու դեղին կեղևը, մայրու ճկուն ճյուղերը, խեժափի-

նու ճկուն ու ամուր արմատները, եղևնու խեժը՝ պիրոգի ճեղքերը լցնելու համար և այլն: Հնդկացիները լավ գիտեն՝ ինչպես պետք է պատրաստել զենքերը, ինչ ծառատեսակներից պետք է ընտրել աղեղը, նետերը, ինչպիսի կենդանիների ջիլերից պետք է պատրաստել լարը և այլն: Նրանք լավ են ճանաչում ուտելի, բուժիչ բույսերը, վայրի պըտղատուները, օգտակար կենդանիները, բնության երևույթները, որոնց միջոցով գուշակում են կենդանիների տեղաշարժի, նրանց քանակության, վիճակի մասին և այլն: Մի խոսքով, կարողանում են կարդալ և լավ հասկանալ «բնության գիրքը»:

Իհարկե, մեր օրերում հազվադեպ և խիստ պատահական երևույթ է երկարատև ժամանակով որևիցե անմարդաբնակ վայրում մեկուսանալը: Սակայն այդպիսի դեպքեր, համենայն դեպս, դեռևս լինում են:

Հայրենական պատերազմից առաջ Մոսկվա—Հեռավոր Արևելք անվայրէջք թռիչքի ժամանակ «Ռոդինա» ինքնաթիռի անձնակազմից Մարիա Ռասկովան ստիպված էր պարաշյուտով վայրէջք կատարել անմարդաբնակ տայգայում: Գտնվելով հազարավոր կիլոմետր տարածվող տայգայի անմարդաբնակ հատվածներից մեկում, հերոսուհի օդաչուն իրեն չկորցրեց: Նրա գրպանում կային ատրճանակ, չթրջվող լուցկու տուփ, երկու սալիկ շոկոլադ և անանուխի յոթ կոնֆետ: Նրա օրագիրը պատմում է, որ միայնակ կյանքը տայգայում լի է ամեն տեսակ վտանգներով: Նենգ ճահիճները ամեն վայրկյան կարող էին կուլ տալ նրան: Սակայն խիզախ օդաչուն նախօրոք կարդացել էր տայգայի մասին, գիտեր, թե ինչ վտանգներ են սպառնում իրեն: Շուտով նա սնկեր է հայտնաբերում: Բոլորին է հայտնի, թե որքան վտանգավոր են թունավոր սնկերը: Սակայն Ռասկովան դրանք լավ էր զանազանում: Այնուհետև նա գտնում է սովորական արոսենու լավ պտղակալած ծառեր և հաճույքով սնվում համեղ պտուղներով: Տասնմեկ օր խիզախ օդաչուն թափառում էր տայգայում, ամբողջովին ապավինելով մայր բնությանը, նրա բարիքներին: Տասներկուերորդ օրը նա գտավ իր ընկերներին:

1947 թ. նորվեգացի գիտնական Թուր Հեյերդալը հինգ ուղեկիցներով խիզախ ճանապարհորդություն կատարեց ինկերի հին ճանապարհով՝ Պերուից դեպի Պոլինեզյան կղզիներ: Նրանց առագաստանավը՝ «Կոն-Տիկին», ինչպես հայտնի է, կառուցված էր հնավոր ժամանակների նավերի օրինակով: Այն բաղկացած էր 9 գերաններից, որոնք միմյանց էին կապված ճոպաններով: Հարյուր օր շարունակ նրանք լողում էին Խաղաղ օվկիանոսում, անցնելով 4300 մղոն, մինչև որ փոքր, անմարդաբնակ կղզու ափին «Կոն-Տիկին» խութերին զարկվելով ջախջախվեց: Վեց խիզախ ճանապարհորդները դարձան ամենաիսկական ռոբինզոններ: Սակայն հարուստ գիտելիքները հնարավորություն տվեցին նրանց ոչ միայն պահպանել իրենց գոյությունը, այլև վերանորոգել նավը և հաղթական ավարտին հասցնել անսովոր ու վըտանգներով լի ճանապարհորդությունը:

Լինում են և այլ բնույթի ռոբինզոններ: «Նարոդնայա վոլյա» կազմակերպության անդամ Միխայիլ Վասիլևիչ Նովոռուսկին, որը Ալեքսանդր 3-րդ ցարի դեմ մահափորձ կատարելու համար քսանհինգ տարի անց է կացրել բանտում, իր «Բանտային ռոբինզոններ» գրքում նկարագրում է, թե բախտակից ընկերների հետ ինչպես է կարողացել բարելավել իրենց վիճակը: Անհավատալի է, սակայն՝ իրականություն, որ նրանք գրեթե ոչնչից կարողացել են շատ բան ստեղծել: Մի անգամ գիրք ընթերցելիս նրանք գտել են էջերից մեկին կպած ազնվամորու մի սերմիկ: Այդ էլ բավական է եղել, որ բանտում ծաղկաթաղարի մեջ բավականին երկար ժամանակ ազնվամորի աճեցնեն և հետագայում, բաց տեղ փոխադրելով, վայելեն նրա համեղ, վիտամիններով հարուստ պտուղները: Հնարամիտ բանտարկյալները նկատելով, որ ուտելու համար տրված ձվերից մեկը հում է, նույնիսկ... պարզունակ ինկուբատոր ըստեղծեցին, ճուտ աճեցրին, մեծանալով նա ձվեր ածեց, և «ինկուբատորը» սկսեց գործել ամբողջ թափով: Նրանք բավականին շատ ճտեր աճեցրին և ձվեր ունեցան: Ավելացնենք, որ բանտը գտնվում էր Շլիսսելբուրգյան կղզու բերդում, աշխարհից միանգամայն կտրված:

Հայրենական մեծ պատերազմի ժամանակ մեծ թվով պարտիզաններ էին գործում թըշնամու խոր թիկունքում: Շատ հաճախ այդ խիզախ մարդիկ ստիպված էին երկար ժամանակ ապավինել հարազատ բնությանը, անտառային բարիքներին: Նրանց փրկում էր բնությունը լավ ճանաչելը, նրա բոլոր բարիքներից հմտորեն օգտվելը: Ովքեր կարդացել են լեհ գրող Նիկոլայ Վնուկովի «Լսեցեք փետուրների երգը» վիպակը, անշուշտ հիշում են, թե լեհ պարտիզաններին ինչպիսի մեծ ծառայություն մատուցեց ամբողջ կյանքը Կանադայի հնդկացիների մեջ անցկացրած Սաթ-Օկը (Ստանիսլավը), որի մայրը լեհ էր, իսկ հայրը՝ հնդկացիների Շաունի ցե-



դի խիզախ առաջնորդը։ Սաթ-Օկը հրաշալի գիտեր բնությունը, հեշտությամբ սնունդ էր հայթայթում, գիտեր խարույկ վառելու այնպիսի եղանակ, որ ծուխը ուրիշների կողմից չնկատվեր։ Իր ձեռքով պատրաստած նետաղեղի միջոցով նա անձայն որս էր անում, կարդում էր անտառի բոլոր հետքերը, անսխալ գուշակում սպասվող եղանակը և այլ փոփոխությունները։ Սաթ-Օկը պարտիզաններին միշտ կարողանում էր դուրս բերել նեղ վիճակից, շնորհիվ այն հարուստ գիտելիքների, որ նա ձեռք էր բերել հնդկացիների մեջ ապրած տարիներին։

1941 թ. վերջում Լենինգրադը շրջապատվեց ֆաշիստական զորքերի կողմից։ Քաղաքի մի քանի միլիոնանոց բնակչությունը սովի էր մատնված, հնարավոր չէր անհրաժեշտ սննդամթերք, դեղորայք հասցնել բնակչությանը։ Եվ ահա քաղաքի բնակչությանը մեծ չափով օգնեցին այն համեստ գիտելիքները, որ նրանք ձեռք էին բերել դպրոցում «Բուսաբանություն» առարկայի դասընթացից։ Քաղաքի պուրակներում, զբոսայգիներում նրանք ուտելի և բուժիչ բույսեր էին փնտրում, տներում աճեցնում էին օգտակար բույսեր։ Նևսկի պողոտայում և այլ փողոցներում, խանութների ցուցափեղկերի ետևում ձմռանը բանջարեղեն էին աճեցնում։ Տների տանիքներում և պատշգամբներում ամենուրեք սկսեցին բազմացնել նեղտերև (ռուսական անվանումով՝ իվան-չայ) կամ խամեներիում։ ՍՍՀՄ Գիտությունների ակադեմիայի Լենինգրադի բուսաբանական այգու և Համամիութենական բուսաբանական ինստիտուտի գիտաշխատողները բնակչության լայն շրջաններում դասախոսություններ էին կարդում, հոդվածներով հանդես էին գալիս թերթերում, բրոշյուրներ էին գրում օգտակար բույսերի մասին։ Կենսաբանության ուսուցիչների նախաձեռնությամբ դպրոցական լուսավոր միջանցքներում, թաղարներում կամ ապակյա բանկաներում աճեցվում էին օգտակար բույսեր, որոնց կողքին, թղթի վրա, գրում էին դրանց օգտակար նշանակության, աճեցման և օգտագործման մասին։ Նախկինում մոլախոտ համարվող շատ բույսեր դարձան օգտագործելի և շատերի կարծիքով՝ նույնիսկ համեղ։ Բուսականությունը մեծ չափով նպաստեց պաշարված քաղաքի հերոս բնակիչների ուժերի վերականգնմանը մինչև վրա հասավ ազատության ժամը։

Հայրենական պատերազմի տարիներին մանկական հրատարակչության խմբագրությունը նամակ ստացավ լեյտենանտ Գրուզդևից, որը խնդրում էր ռազմաճակատ, իրենց

ստորաբաժանմունք ուղարկել գրքեր անտառի, վայրի բույսերի օգտագործման, բնության ուսումնասիրության, թռչունների ու այլ կենդանիների մասին: «Այդ գրքերը,— գրում էր նա,— օգնում են ռազմիկներին ճանաչելու հայրենի բնությունը, նրա անտառների, գետերի ու մարգագետինների բնակիչներին: Առանց բնության մասին տարրական գիտելիքներ ունենալու դժվար է հետախուզության գնալ: Անտառը լավ իմանալը, հետքերը կարդալու հմտությունը օգնում են հետախույզին ձուլվել տեղանքին և աննկատ մնալ, ցանկացած վիճակում ճիշտ կողմնորոշվել:

Դա բացարձակ ճշմարտություն է. լավ մարտիկը պետք է լավ ճանաչի բնությունը: Պատերազմի ժամանակ ռոբինզոնի վիճակում կարող է հայտնվել ամեն մեկը: Շրջապատման մեջ եղած ժամանակ, երկարատև արշավների ընթացքում այս կամ այն պատճառով յուրայիններից կտրվելը զինվորին ստիպում են ամբողջովին ապավինել մայր բնությանը:

«Ռոբինզոն» հասկացողությունը այժմ այլ է: Այժմ «ռոբինզոն» անվան տակ պատկերացնում ենք մարդ, որը ոչ միայն միայնակ ապրում է անմարդաբնակ կղզում, այլև, գտնըվելով բնության մեջ, մեկուսացած պայմաններում, և չունենալով ոչինչ՝ կարող է ինքնուրույն կերպով ձեռք բերել կյանքի համար անհրաժեշտ ամեն ինչ և պահպանել իր գոյությունը:

Մեր հաջորդ զրույցներով կաշխատենք ձեզ գիտելիքներ տալ «ռոբինզոնի» վիճակում գտնվելու դեպքում կողմնորոշվելու համար:

ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Կենսաբանության դոկտոր, պրոֆեսոր

## ԺԱՄԱՆՑ





**Այս պատկերները կարո՞ղ եք գծել առանց մատիտը թղթից կտրելու:**

**«ՊԻՈՆԵՐ» № 4-Ի ԺԱՄԱՆՑԻ ՊԱՏԱՍԽԱՆԸ՝**
**Ապակին կոտրել էր Դիման:**



ԵՐՎԱՆԴ ՔՈՉԱՐ (1899—1979 թթ.)
«ՍԱՍՈՒՆՑԻ ԴԱՎԻԹ» 1939 Թ. (ՀԱՏՎԱԾ)



Գլխավոր խմբագիր՝ **ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ**

Խմբագրական կոլեգիա՝ ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ.։

Պատասխանատու քարտուղար՝ ՏՈՆՈՅԱՆ Թ., գեղարվեստական խմբագիր՝ ՔԵՉՕՂԼՅԱՆ Մ., տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Շ., սրբագրիչ՝ ԱՅՎԱԶՅԱՆ Վ.։

ԻՆԴԵՔՍ՝ 77806

ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.